Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 9 (87)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն, ԵՐԵՎԱՆ—1940 թ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 9 (87)


Հայկական ՍՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն, ԵՐԵՎԱՆ—1940 թ.

«ԴԵՌ ԱՆՑՅԱԼ ԴԱՐՈՒՄ ԲՈԼՈՐ ՅԵՐԿՐՆԵՐԻ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ ՎՈՐՈՇԵՑԻՆ ԱՄԵՆ ՏԱՐԻ ՏՈՆԵԼ ԱՅՍՈՐՎԱ ՈՐ՝ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ։ ԱՅԴ 1889 ԹՎԻՆ ԵՐ, ՅԵՐԲ ԲՈԼՈՐ ՅԵՐԿՐՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏՆԵՐԻ ՓԱՐԻԶՅԱՆ ԿՈՆԳՐԵՍՈՒՄ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ ՎՈՐՈՇԵՑԻՆ ՀԱՏԿԱՊԵՍ ԱՅՍՈՐ՝ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻ ՈՐԸ, ՅԵՐԲ ԲՆՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԹՆԱՆՈՒՄ Ե ՁՄԵՌՎԱ ՔՆԻՑ, ԱՆՏԱՌՆԵՐՆ ՈՒ ԼԵՌՆԵՐԸ ԾԱԾԿՎՈՒՄ ԵՆ ԿԱՆԱՉՈՎ, ԴԱՇՏԵՐՆ ՈՒ ՄԱՐԳԱԳԵՏԻՆՆԵՐԸ ԶԱՐԴԱՐՎՈՒՄ ԵՆ ԾԱՂԻԿՆԵՐՈՎ, ԱՐԵՎՆ ՍԿՍՈՒՄ Ե ԱՎԵԼԻ ՏԱՔԱՑՆԵԼ, ՈԴՈՒՄ ԶԳԱՑՎՈՒՄ Ե ՎԵՐԱԾՆՈՒԹՅԱՆ ՈՒՐԱԽՈՒԹՅՈՒՆԸ, ԻՍԿ ԲՆՈՒԹՅՈՒՆՆ ԱՆՁՆԱՏՈՒՐ Ե ԼԻՆՈՒՄ ՊԱՐԻ ՈՒ ՑՆԾՈՒԹՅԱՆ, ՆՐԱՆՔ ՎՈՐՈՇԵՑԻՆ, ՀԱՏԿԱՊԵՍ ԱՅՍՈՐ, ՀԱՅՏԱՐԱՐԵԼ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻՆ, ՎՈՐ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆԸ ԲԵՐՈՒՄ ԵՆ ԳԱՐՈՒՆ ՅԵՎ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԿԱՊԱՆՔՆԵՐԻՑ, ՎՈՐ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ ԿՈՉՎԱԾ ԵՆ ՎԵՐԱՓՈԽԵԼ ԱՇԽԱՐՀՆ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ՅԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԻՄԱՆ ՎՐԱ»։

(Ի. Վ. ՍՏԱԼԻՆ, «1912 թ. մայիսմեկյան թռուցիկից»)։

# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻ 51-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՏՈՆՆ Ե

*(Նյութեր զեկուցողների համար)*

## ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵԿԱՆՔ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻ ՄԱՍԻՆ

*Մայիսմեկյան տոնը միջազգային պրոլետարիատի համերաշխության տոնն ե։ Այդ որն ունի իր պանծալի հեղափոխական պատմությունը։*

*1889 թ. Փարիզում տեղի ունեցած սոցիալիստների միջազգային կոնգրեսում վորոշվեց 1890 թ. մայիսի մեկին բոլոր յերկրներում կազմակերպել բանվորների միջազգային մանիֆեստացիա, ամեն տեղ 8-ժամյա բանվորական որ սահմանելու պահանջով։*

«ԴԵՌ ԱՆՑՅԱԼ ԴԱՐՈՒՄ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ ՎՈՐՈՇԵՑԻՆ ԱՄԵՆ ՏԱՐԻ ՏՈՆԵԼ ԱՅՍՕՐՎԱ ՕՐ՝ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ։ ԱՅԴ 1889 ԹՎԻՆ ԷՐ, ԵՐԲ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ ՍՈՑԻԱԼԻՍՏՆԵՐԻ ՓԱՐԻԶՅԱՆ ԿՈՆԳՐԵՍՈՒՄ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ ՎՈՐՈՇԵՑԻՆ ՀԱՏԿԱՊԵՍ ԱՅՍՕՐ՝ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻ ՕՐԸ, ԵՐԲ ԲՆՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԹՆԱՆՈՒՄ Է ՁՄԵՌՎԱ ՔՆԻՑ, ԱՆՏԱՌՆԵՐՆ ՈՒ ԼԵՌՆԵՐԸ ԾԱԾԿՎՈՒՄ ԵՆ ԿԱՆԱՉՈՎ, ԴԱՇՏԵՐՆ ՈՒ ՄԱՐԳԱԳԵՏԻՆՆԵՐԸ ԶԱՐԴԱՐՎՈՒՄ ԵՆ ԾԱՂԻԿՆԵՐՈՎ, ԱՐԵՎՆ ՍԿՍՈՒՄ Է ԱՎԵԼԻ ՏԱՔԱՑՆԵԼ, ՕԴՈՒՄ ԶԳԱՑՎՈՒՄ Է ՎԵՐԱԾՆՈՒԹՅԱՆ ՈՒՐԱԽՈՒԹՅՈՒՆԸ, ԻՍԿ ԲՆՈՒԹՅՈՒՆՆ ԱՆՁՆԱՏՈՒՐ Է ԼԻՆՈՒՄ ՊԱՐԻ ՈՒ ՑՆԾՈՒԹՅԱՆ, ՆՐԱՆՔ ՎՈՐՈՇԵՑԻՆ, ՀԱՏԿԱՊԵՍ ԱՅՍՕՐ, ՀԱՅՏԱՐԱՐԵԼ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀԻՆ, ՎՈՐ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆԸ ԲԵՐՈՒՄ ԵՆ ԳԱՐՈՒՆ ԵՎ ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅՈՒՆ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ԿԱՊԱՆՔՆԵՐԻՑ, ՎՈՐ ԲԱՆՎՈՐՆԵՐԸ ԿՈՉՎԱԾ ԵՆ ՎԵՐԱՓՈԽԵԼ ԱՇԽԱՐՀՆ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԻՄԱՆ ՎՐԱ»։

(Ի. Վ. ՍՏԱԼԻՆ, «1912 թ. մայիսմեկյան թռուցիկից»)։

# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻ 51-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՕՐՆ Է

(Նյութեր զեկուցողների համար)

## ՊԱՏՄԱԿԱՆ ՏԵՂԵԿԱՆՔ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻ ՄԱՍԻՆ

*Մայիսմեկյան տոնը միջազգային պրոլետարիատի համերաշխության տոնն է։ Այդ օրն ունի իր պանծալի հեղափոխական պատմությունը։*

*1889 թ. Փարիզում տեղի ունեցած սոցիալիստների միջազգային կոնգրեսում վորոշվեց 1890 թ. մայիսի մեկին բոլոր յերկրներում կազմակերպել բանվորների միջազգային մանիֆեստացիա, ամեն տեղ 8-ժամյա բանվորական օր սահմանելու պահանջով։*

Միջազգային պրոլետարիատը մեծ խանդավառությամբ ընդունեց միջազգային պրոլետարական համերաշխության մարտական օրը՝ մայիսի մեկը տոնելու վորոշումը: Ամենուրեք բանվորական կազմակերպությունները սկսեցին մարտի պատրաստվել: Առաջին ուժեղ մայիսմեկյան ցույցերը տեղի ունեցան 1890 թվին, Անգլիայում, Գերմանիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, Իսպանիայում, Ավստրիայում և մի շարք այլ յերկրներում: Այդ օրը բանվորները թողին աշխատանքը և հեղափոխական պահանջներով փողոց դուրս յեկան, ցուցադրելով իրենց հսկայական ուժը, հզորությունն ու կազմակերպվածությունը: Խուճապային վախ պատեց բուրժուազիային, վորը շատ արագ գնահատեց պրոլետարական տոնի հեղափոխական նշանակությունը և մոբիլիզացիայի յենթարկելով վոստիկանությունը, զորքը, կազմակերպելով տեռոր, պրովակացիա, կաշառք, աշխատեց ճախողել պրոլետարական մայովկաները: Մի շարք յերկրներում գործը հասնում ե լուրջ ընդհարումների, նույնը կրկնվում ե մայիսմեկի օրերին, հետագա տարիների ընթացքում, կապիտալիստական յերկրներում:



1890 թվականի մայիսի մեկի օրը ցույցարարների դեմ զինված ուժեր հանեցին Մադրիդում, Բեռլինում, Փարիզում, Հռոմում, Վիեննայում: Սակայն այդ ամբողջ նախապատրաստությունը չվիժեցրեց մայիսի 1-ի տոնակատարումը: Այդ օրը միջազգային պրոլետարիատի հսկայական հաջողությունների օրը յեղավ, այդ օրը աշխարհն առաջին անգամ ականատես յեղավ բանվոր դասակարգի միջազգային ընդհանուր յելույթին:

Ենգելսը «Կոմունիստական կուսակցության մանիֆեստ»-ի առաջաբանում, գրված 1890 թվի մայիսի 1-ի օրը, ասում ե.

«...Այսօր, յերբ յես այս տողերն եմ գրում, յեվրոպական և ամերիկյան պրոլետարիատը զորատես ե կատարում իր մարտական ուժերի, վորոնք առաջին անգամն ե, վոր զինակոչված են մի միասնական բանակի մեջ, միասնական դրոշի տակ, միասնական մերձավորագույն նպատակի համար, հանուն օրենսդրական կարգով ութ ժամյա նորմալ աշխատանքային օր սահմանելու, վորն առաջին անգամ հայտարարել եր դեռ 1866 թ. Ինտերնացիոնալի Ժընևի կոնգրեսը և ապա յերկրորդ անգամ Փարիզի բանվորական կոնգրեսը՝ 1889 թ.:

Ցեվ այսօրվա տեսարանը բոլոր յերկրների կապիտալիստներին և հողատերերին ցույց կտա, վոր բոլոր յերկրների պրոլետարներն այսօր իրոք միացել են:

Ո՜հ, յերանի թե Մարքսն այժմ իմ կողքին լիներ, վորպեսզի իր սեփական աչքերով տեսներ այդ»:1)

Մայիսմեկյան ցույցը 1890 թ. բոլոր յերկրների կապիտալիստներին և հողատերերին ցույց տվեց, վոր բոլոր յերկրների պրոլետարներն իսկապես միացել են և նրանք են հանդիսանում կապիտալիզմի դերեզմանափորները: Այդ օրն իրոք միջազգային պրոլետարական համերաշխության օր եր:

1891 թվականի մայիսի 1-ը նույնպես նշվեց արյունահեղ ընդհարումներով՝ բանվորների և բուրժուազիայի վարձկան ջոկատների միջև: Մայիսմեկյան դրոշները ներկվել եյին բանվորների արյունով: Չնայած այն բանին, վոր բուրժուազիան դիմում եր ամենատարբեր միջոցների, բան-

1) Կ. Մարքս և Ֆ. Ենգելս, «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը», հայերեն հրատ., եջ 31, Կուսհրատ, 1938 թ.:



վորների հեղափոխական ելույթները կասեցնելու համար, այնուամենայնիվ մայիսմեկյան տոների և ցույցերի գաղափարը դարձավ ժողովրդական:

Այդ ժամանակից ի վեր, մայիսմեկյան տոների օրերին, բուրժուազիան մոբիլիզացիայի յե յենթարկում իր ամբողջ ռազմական ապարատը ընդդեմ բանվոր դասակարգի և նրա հեղափոխական ելույթների: Այս գործում բուրժուազիային օգնության յեկան 2-րդ Ինտերնացիոնալի օպորտունիստները, վորոնք բուրժուազիայի հետ համաձայնության գալու գիծ եյին բռնել: Նրանք հենց սկզբից աշխատում եյին վոչնչացնել մայիսմեկյան տոների հեղափոխական նշանակությունը: Արդեն 2-րդ Ինտերնացիոնալի 1891 և 1904 թ. թ. կոնգրեսների ընդունած բանաձևերում բացահայտորեն կոչ եր արվում հրաժարվելու մայիսմեկյան հեղափոխական պայքարից և մայիսի 1-ի տոնը դարձնել դիմարձացուցիչ պլատոնիքների օր: Իսկ 1914 թ. համաշխարհային իմպերիալիստական պատերազմի հենց սկզբին, 2-րդ Ինտերնացիոնալի լիդերներն անցան բուրժուական կառավարությունների կողմը և պաշտոնապես վերացրին մայիսի 1-ի տոնակատարությունը:

Հակառակ 2-րդ Ինտերնացիոնալի օպորտունիստական քաղաքականության՝ միջազգային պրոլետարիատի համերաշխության տոնը՝ մայիսի 1-ը վերածվեց Լենինի և Ստալինի ստեղծած Կոմունիստական Ինտերնացիոնալի փառապանծ դրոշի ներքո:

Ռուսաստանում մայիսի 1-ն առաջին անգամ նշվեց 1890 թվականին Վարշավայում տեղի ունեցած գործադուլով, որին մասնակցում էին 10 հազար բանվորներ: 1891 թվին մայովկաներ տեղի ունեցան Վարշավայում և Պետերբուրգում. այդ օրերին տեղի ունեցան գործադուլներ և բանվորական գաղտնի ժողովներ:

Մոսկվայում առաջին մայովկան անցկացվեց 1895 թվականին, որին մասնակցում էին 250 հոգի:

1896 թվականին Պետերբուրգում հրատարակված մայիսմեկյան թռուցիկում, որը գրել էր Լենինը բանտում, ասված է. «Ժամանակն է, որ մենք էլ՝ ռուս բանվորներս, պատռենք այն շղթան, որով կապկպել են մեզ կապիտալիստներն ու կառավարությունը, որպեսզի ճնշման տակ պահեն. ժամանակն է, որ մենք էլ միանանք մեր եղբայրների՝ այլ պետությունների բանվորների պայքարին, կանգնենք նրանց հետ այն ընդհանուր դրոշի տակ, որի վրա գրված է՝ «Բանվորներ բոլոր երկրների, միացե՛ք»:1):



Ընկեր Լենինի գրած այս մայիսմեկյան թռուցիկը խոշոր նշանակություն ունեցավ Պետերբուրգի բանվորների դասակարգային գիտակցության աճման համար, որի հետևանքով 1896 թվականի ամառը Պետերբուրգի 30 հազար տեքստիլ բանվորները գործադուլ հայտարարեցին:

Ռուսաստանի բանվորական շարժման զարգացման վրա զգալի ազդեցություն գործեցին Խարկովի բանվորների 1900 թվականի մայիսի մեկի խոշոր ցույցերը, որոնցում մասնակցում էին 10 հազար բանվորներ:

«Մայիսյան օրերը Խարկովում» բրոշյուրի առաջաբանում Լենինը գրում է.

«Այն հեքիաթը, թե իբր ռուսական բանվորները դեռևս չեն հասունացել քաղաքական պայքարի համար, թե իբր նրանց գլխավոր գործը զուտ տնտեսական պայքարն է... Այդ հեքիաթը վճռականապես հերքվում է Խարկովի մայովկայով»:2)

---

1) ԼԵՆԻՆ, հատ. 1-ին, էջ 454:

2) ԼԵՆԻՆ, հատ. 4-րդ, էջ 47—48:

1901 թվականին մայիսմեկյան ցույցերն ավելի մեծ չափ են ընդունում, այդ ցույցերից հատկապես պետք է նշել Թիֆլիսի և Պետերբուրգի բանվորների ցույցը: Այդ օրը Թիֆլիսում գործադուլ էին արել 3000 բանվորներ, բանվորները կրում էին կարմիր դրոշակներ և Մարքսի ու Էնգելսի նկարները, ցույցի կազմակերպիչն էր ընկեր Ստալինը:

Մայիսի 1-ը Ռուսաստանում գնալով ավելի ու ավելի մեծ նշանակություն է ձեռք բերում որպես միջազգային մարտական օր, պրոլետարական համերաշխության օր: Տարեց-տարի ավելացել է մայիսի 1-ը տոնող քաղաքների թիվը: Այսպես օրինակ՝ 1902 թվականին մայիսի 1-ը տոնվեց 36 քաղաքներում, 1903 թվականին՝ 63 քաղաքներում, 1904 թվականին՝ 126 քաղաքներում ու գյուղաքաղաքներում:

Չնայած ցարական ժանդարմների կազմակերպած դաժան պատասխանին ու ջարդերին, այնուամենայնիվ աճում է մասսաների հեղափոխական շարժումը, որը և վեր է ածվում արյունահեղ կռիվների, գործադուլավոր բանվորների և ցարական զորքերի միջև:

«1901 թվականին Պետերբուրգի Օբու-



խովյան ռազմական գործարանում ծագած մայիսմեկյան գործադուլը վերածվեց արյունահեղ ընդհարման՝ բանվորների և զորքերի միջև: Ցարական զինված զորքերին բանվորները կարող էին հակադրել միայն քարեր և երկաթի կտորներ: Բանվորների համառ դիմադրությունը կոտրվեց...Բայց հերոսական «Օբուխովյան պաշտպանությունը» նշանակալի ազդեցություն թողեց Ռուսաստանի բանվորների վրա և համակրանքի ալիք առաջ բերեց բանվորների մեջ»[1]):

Մայիսմեկյան ցույցերն առանձնապես հզոր յեղան և լայն չափեր ընդունեցին 1905—1907 թ. թ. ռուսական առաջին հեղափոխության տարիներին: Ծավալվող հեղափոխության պայմաններում մայիսի 1-ի տոնակատարությունը բոլշևիկների կուսակցությունն օգտագործեց մասսաներին մոբիլիզացիայի ենթարկելու համար՝ զինված ապստամբության նախապատրաստելու և ցարական կարգերը տապալելու նշանաբանով:

Անդրկովկասում 1905 թվականի մայիսմեկյան ցույցերի կազմակերպիչն ու ղե-

1) «ՀՍՄԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց», էջ 37—38:

կավարը ընկեր Ստալինն էր: Այդ ժամանակ ընկեր Ստալինը ղեկավարում էր ՌՍԴԲԿ Կովկասյան Միութենական կոմիտեն, վոր գլխավորում և ուղղություն էր տալիս ինքնակալությունը տապալելու համար Անդրկովկասի բանվորների ու գյուղացիների մղած հեղափոխական պայքարին: Ռեակցիայի տարիներին, չնայած տեռորի կատաղի զարգացմանը, Ռուսաստանում տեղի եյին ունենում մայիսմեկյան գործադուլներ ու ցույցեր: Պետերբուրգում 1907 թվականին գործադուլ է անում մոտ հարյուր հազար բանվոր, Մոսկվայում տեղի յե ունենում համարյա ընդհանուր գործադուլ:

Բանվորական շարժման նոր վերելքը 1911—1912 թվականներին՝ անդրադարձավ նաև մայիսմեկյան ցույցերի վրա: Մայովկաները նորից լայն թափ ստացան. 1912 թվականի մայիսմեկյան տոնի նախապատրաստումը Կուսակցության Կենտկոմի կողմից հանձնարարվում է ընկեր Ստալինին: Ընկեր Ստալինը մայիսի 1-ի նախօրյակին շրջում է Ռուսաստանի կարևորագույն շրջանները, կազմակերպում ու ցուցումներ է տալիս տոնի նախապատրաստման ուղղությամբ:



1912 թվականին կուսակցության Կենտկոմը հրատարակում է անլեգալ մայիսմեկյան թռուցիկ, վորը գրել էր ընկեր Ստալինն իր ձերբակալումից վոչ շատ առաջ: Այդ թռուցիկում ասված է.

«Յուրաքանչյուր դասակարգ ունի իր սիրած տոները: Ազնվականներն ստեղծել են իրենց տոները, այդ տոներին նրանք հռչակում են գյուղացիներին կողոպտելու «իրավունքը»: Բուրժուաներն ունեն իրենցը և այդ տոներին նրանք «արդարացնում են» բանվորներին շահագործելու «իրավունքը»: Տոներ ունեն նաև տերտերները և այդ տոներին նրանք գովաբանում են գոյություն ունեցող կարգերը, վորտեղ աշխատավորները վոչնչացվում են աղքատության մեջ, իսկ ձրիակերները հղփանում են շռայլության մեջ:

Իրենց տոնը պետք է ունենան նաև բանվորները և այդ տոնին նրանք պետք է հռչակեն՝ ընդհանուր աշխատանք, ընդհանուր ազատություն, բոլոր մարդկանց ընդհանուր հավասարություն: Այդ տոնը մայիսի 1-ի տոնն է:

«...Յեվ այսոր, մայիսի մեկի օրը, մենք այս կամ այն ձևով, միտինգներում, մասսայական հավաքույթներում կամ

գաղտնի ժողովներում,— վորտեղ ինչպես ավելի նպատակահարմար կլինի,— պետք է ասենք, վոր յերդվում ենք պայքարել ցարական պետությունը լիովին տապալելու համար, վոր վողջունում ենք գալիք ռուսական հեղափոխությունը՝ Ռուսաստանի ազատարարին: Մեկնենք ուրեմն մեր ձեռքն արտասահմանի մեր ընկերներին և նրանց հետ միասին գոչենք՝

Կորչի՛ կապիտալիզմը:

Կեցցե՛ սոցիալիզմը»:

1912 թվականի ցույցերը միևնույն ժամանակ պրոլետարիատի պատասխանն եր բանվորների գնդակահարմանը՝ Լենայի վոսկու հանքերում:

1914–1918 թ. թ. իմպերիալիստական պատերազմը առանձնապես ակնառու կերպով պարզեց 2-րդ Ինտերնացիոնալի դավաճանական, հակահեղափոխական եյությունը: 2-րդ Ինտերնացիոնալի առաջնորդները բաց և ի բաց անցան բուրժուազիայի կողմը: Նրանք վո՛չ միայն դադարեցրին գործադուլները, միջազգային յելույթների համար մղվող ամեն տեսակի ագիտացիան, այլև պայքարում եյին այդ ուղղությամբ բանվորների ցուցաբերած բոլոր փորձերի դեմ: Նրանք փոխանակ



պայքար կազմակերպելու մղվող իմպերիալիստական պատերազմի դեմ, վորոշում կայացրին, թե նկատի ունենալով պատերազմը՝ «Մայիսի 1-ին վոչ մի յելույթ չպետք է տեղի ունենա»:

Միայն Լենինի-Ստալինի ղեկավարած բոլշևիկների կուսակցությունն եր, վոր մասսաների գլուխն անցած, շարունակում եր զինավորել բանվոր դասակարգի հեղափոխական շարժումը՝ «Կորչի իմպերիալիստական պատերազմը», «Իմպերիալիստական պատերազմը վերածենք քաղաքացիական պատերազմի» լոզունգներով:

Հոկտեմբերյան Մեծ Հեղափոխությունը, վորը դրեց համաշխարհային պրոլետարական հեղափոխության սկիզբը, մեծ բարձրության հասցրեց միջազգային պրոլետարական համերաշխության գաղափարը: Պատերազմի ժամանակաընթացքից հետո առաջին, հզոր մայիսմեկյան ցույցը միջազգային պրոլետարիատը տեսավ 1917 թվի մայիսի մեկին:

Պետերբուրգի բանվորները, բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ, մեծ ցույց կազմակերպեցին «ամբողջ իշխանությունը խորհուրդներին» լոզունգներով:

1918 թվականի մայիսի 1-ը մեր հայրե-

նիքի աշխատավորությունը առաջին անգամ տոնեց վորպես աշխատավորության պաշտոնական տոն: Հոկտեմբերյան Մեծ Հեղափոխությունը Ռուսաստանում իրականացրեց համայն աշխարհի պրոլետարիատի յերազը:

Հայաստանում առաջին անգամ մայիսի 1-ը տոնվեց 1899 թ. Յերեվանում: Այդ տոնակատարությունը կազմակերպեցին Յերեվանի Թեմական դպրոցի և արական գիմնազիայի բարձր խմբերի աշակերտությունը՝ միացած Շուստովի («Արարատ») գործարանի և մի խումբ այլ բանվորների հետ: Նախապես յեղած պայմանի համաձայն, տոնի մասնակցողները միացան իրար հետ Կոնդի ձորում և մայիսի 1-ը տոնվեց Ջանգվի ձորում: Օրվա նշանակության առթիվ տեղի ունեցավ զրույց, վորից հետո վոստիկանության հսկողությունից խուսափելու համար, մասնակիցները ցրվեցին իրենց տեղերը:

Ավելի կազմակերպված և ավելի հաջող նախապատրաստվեց 1904 թ. մայիսմեկյան տոնակատարությունը Լենինականում (Ալեքսանդրոպոլում): Մինչ այդ, ՌՍԴԲԿ Կովկասյան Միությունն ընկեր Ստալինի գլխավորությամբ ռուսերեն, վրացերեն և



հայերեն լեզուներով հրատարակել եր բրոշյուրներ և թռուցիկներ, վորոնք բացատրում եյին մայիսմեկյան տոնի նշանակությունը և այն մարտականորեն կազմակերպելու անհրաժեշտությունը: Հետագայում մայիսմեկյան տոնակատարությունը տեղի յե ունենում 1905 թ. Լենինականում (Ալեքսանդրոպոլում), Յերեվանում, Ղարսում, Ալավերդում, Ղափանում և այլն:

1920 թ. մայիսմեկյան ցույցերը վերածվեցին զինված կոմունիստական ապստամբությունների՝ Հայաստանի մի շարք քաղաքներում և շրջաններում՝ Ալեքսանդրոպոլ, Ղարս, Սարըղամիշ, Ն. Բայազետ և և այլն:

## ՅԵՐԿՐՈՐԴ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ ՅԵՎ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Այս տարի մայիսի մեկը տոնվում է միջազգային հարաբերությունների ամենալարված պայմաններում: Այն ժամանակ, յերբ սոցիալիզմի յերկրում ծաղկում է համայն աշխատավորության իղձը՝ բերկրալի և յերջանիկ կյանքը, կապիտալիզմի աշ-

խարհը ապրում է մահամերձ վիճակ: Նա համակված է ընդհանուր ճգնաժամով:

Առաջին իմպերիալիստական պատերազմը և նրան հաջորդող, այսպես կոչված՝ «խաղաղության» Վերսալի պայմանագրին ավելի խորացրին կապիտալիստական յերկրների միջեվ գոյություն ունեցող հակասությունները. այժմ ծայրաստիճան սրվել են կապիտալիստական պետությունների ներքին և արտաքին հակասությունները և աշխարհն արդեն վերաբաժանվում է զենքի ուժով:

Անցյալի տնտեսական ճգնաժամից ստացած իրենց վերքերը դեռ լիովին չբուժած կապիտալիստական յերկրները կանգնեցին նոր ճգնաժամի առաջ: Ընկ. Ստալինը ՀամԿ(բ)Կ 18-րդ համագումարում վերլուծելով միջազգային դրությունը, ասաց. «Տնտեսական նոր ճգնաժամը պետք է հասցնի և իրոք հասցնում է իմպերիալիստական պայքարի հետագա սրմանը: Խոսքը վերաբերում է արդեն վո՛չ շուկաներում յեղած մրցակցությանը, վո՛չ առևտրական պատերազմին, վո՛չ դեմպինգին: Պայքարի այդ միջոցները վաղուց արդեն անբավարար են ճանաչվել: Խոսքն այժմ վերաբերում է աշխարհի ազդեցության սֆերաների,



գաղութների նոր վերաբաժանման՝ ռազմական գործողությունների միջոցով»:

Անգլո-Ֆրանսիական իմպերիալիստներն աշխարհի նոր վերաբաժանման համար պատերազմի օջախ ստեղծեցին Յեվրոպայում: Ճապոնական իմպերիալիստներն այս յերրորդ տարին է, վոր ավազակային պատերազմ են մղում Չինաստանի դեմ, վորը հերոսաբար դիմադրում է իր անկախությունը պաշտպանելու համար: Պատերազմի անգլո-Ֆրանսիական հրձիգներն ամեն կերպ աշխատեցին, վորպեսզի Խորհրդային Միությունը քաշեն Յեվրոպական հրդեհի մեջ, սակայն ԽՍՀՄ խաղաղասիրական քաղաքականությունը ձախողեց նրանց պլանները: Շնորհիվ Խորհրդային Միության խաղաղասեր քաղաքականության, բարեկամական կապեր հաստատվեցին Գերմանիայի, Եստոնիայի, Լատվիայի և Լիտվայի հետ:

Բարեկամական այդ կապը նախադրյալներ է ստեղծում Խորհրդային Միության ու այդ պետությունների միջեվ գոյություն ունեցող հարաբերությունների հետագա ե՛լ ավելի ամրապնդման համար: Չնայած այս բոլորին, անգլո-Ֆրանսիական բլոկն ավելի հեռուն գնաց, նա ԽՍՀՄ-ի դեմ զինված

յելույթի հանեց սպիտակ ֆիններին և այդ զինված յելույթն սկիզբը պետք է հանդիսանար Խորհրդային Միության դեմ վաղուց ի վեր պատրաստվող պատերազմի: Ապացուցելու համար, թե ինչպես անգլո-ֆրանսիական իմպերիալիստները վաղուց ի վեր պատերազմի էին պատրաստվում ԽՍՀՄ-ի դեմ, ընկ. Մոլոտովը ԽՍՀՄ-ի Գերագույն Խորհրդի 6-րդ սեսսիայում ասաց.

«Այստեղ տեղի ունեցավ մեր զորքերի ընդհարում վոչ թե պարզապես ֆիննական զորքերի հետ, այլ մի շարք յերկրների իմպերիալիստների միացյալ ուժերի հետ, ներառյալ՝ անգլիական, ֆրանսիական ու այլ իմպերիալիստների, վորոնք ֆինլանդական բուրժուազիային ոգնում էին զենքի բոլոր տեսակներով...»: Սակայն, սոցիալիզմի հզոր յերկրի առաջավոր տեխնիկայով զինված Կարմիր Բանակը և Կարմիր Նավատորմը ջախջախեցին թշնամիների այդ միացյալ ուժերը և խաղաղությունն ապահովեցին մեր յերկրի սահմաններում:

Խորհրդային Միության և ամբողջ աշխարհի աշխատավորներն այս տարի մայիսի մեկի տոնը դիմավորում են ստալինյան նորանոր հաղթանակներով: Իրականացվել



է Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի ժողովուրդների յերազը, ժողովուրդներ, վորոնց՝ Կարմիր Բանակն ազատագրեց լեհական պաների լծից: Խորհրդային Միության բանվորագյուղացիական հերոսական Կարմիր Բանակը փայլուն հաղթանակ տարավ սպիտակ ֆինների և միջազգային իմպերիալիզմի այլ ագենտների դեմ մղած մարտում. այդ հաղթանակի արդյունքն յեղավ 12-րդ միութենական հանրապետության ստեղծումը: Սոցիալիզմի յերկրի զինված ուժերը խորտակեցին ռազմական այն ամրությունները կարելական պարանոցում, վորոնք կառուցել էին իմպերիալիստական պետությունները ԽՍՀՄ-ի վրա հարձակվելու համար: Մեր քաջարի Կարմիր Բանակը վերջնականապես ապահովեց Միության հյուսիս-արևմտյան սահմանների և Լենինի քաղաքի անվտանգությունը: ԽՍՀՄ-ի ազատ ժողովուրդների մեծ ընտանիքի հետ միավորվեց նոր կազմըված Կարելո-Ֆիննական Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունը:

Կես տարուց ավելի յե, ինչ անգլո-ֆրանսիական կապիտալիստները պատերազմ են մղում Յեվրոպայում. Նրանց կողմն են անցել Յերկրորդ Ինտերնացիոնա-

ն ղեկավարները և պրովոկացիոն կամպանիա չեն մղում ԽՍՀՄ-ի դեմ, նրան պատերազմի մեջ քաշելու համար: Պատերազմի հրձիգներն ամեն կերպ աշխատում են նորանոր պետություններ քաշել ծավալված հրդեհի մեջ, զորքեր են կենտրոնացնում Մերձավոր Արևելքում: «Մենք պետք է զգաստ լինենք այդ գաղութային և ոչ գաղութային զորքերը Խորհրդային Միության նկատմամբ թշնամական նպատակներով օգտագործելու փորձերի հանդեպ: Այդ կարգի ամեն տեսակ փորձերը մեր կողմից կառաջացնեն պատասխան միջոցառումներ ընդդեմ ագրեսորների, ընդ որում կրակի հետ այդպիսի խաղի վտանգավորությունը պետք է միանգամայն ակնհայտ լինի ԽՍՀՄ-ի նկատմամբ թշնամական տերությունների համար և մեր հարևաններից նրանց համար, ովքեր կգտնեն ԽՍՀՄ-ի դեմ ուղղված այդ ագրեսիվ քաղաքականության զենքը»: (Ծափահարություններ): (Մոլոտով):

Միշտ հիշելով ընկեր Ստալինի խոսքերը կապիտալիստական շրջապատման մասին և ընկ. Մոլոտովի վերոհիշյալ խոսքերը իմպերիալիստների նոր հերյուրանքների մասին ԽՍՀՄ-ի դեմ, մենք միշտ մոբիլիզա-



ցիոն վիճակում պիտի պահենք մեր ժողովուրդը ամեն տեսակի պատահականության դեմ: Ամեն կերպ պետք է ամրացնենք աշխարհում միակ, սոցիալիզմի երկրի հզորությունը, պաշտպանունակությունը, ե՛լ ավելի ուժեղացնենք Կարմիր Բանակը, մեր հայրենիքի խաղաղ աշխատանքը պաշտպանողին: Մեր խաղաղության քաղաքականությունը՝ դա մեր Կարմիր Բանակի ուժեղացումն է, դա մեր երկրի պաշտպանական ուժեղացումն է: Կարմիր Բանակի թիկունքը— դա 183 միլիոնանոց խորհրդային ժողովուրդն է, որն ամուր կերպով համախմբված է իր կոմունիստական կուսակցության շուրջը, իր կառավարության շուրջը, իր առաջնորդի, ուսուցչի և ամբողջ աշխարհի աշխատավորների հարազատ մեծ Ստալինի շուրջը:

## ԻՆՉՈՎ Է ԴԻՄԱՎՈՐՈՒՄ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿԻՐԸ 1940 Թ. ՄԱՅԻՍԻ 1-Ը

Խորհրդային Միության աշխատավորները՝ կոմունիստական հասարակության կառուցողները, որոնց ղեկավարում է Լենին-Ստալինի պանծալի կուսակցությունը, մեծ հաղթանակներով են դիմավորում 1940 թ. մայիսի 1-ը, պրոլետարական հա-

մերաշխության միջազգային ողը: Խորհրդային ժողովուրդն այդ նվաճումները ձեռք բերեց անխնա պայքար մղելով սոցիալիզմի երկրի թե՛ ներքին և թե՛ արտաքին թշնամիների դեմ. ջախջախեց իր բոլոր թշնամիներին—տրոցկիստներին, բուխարինականներին, բուրժուա-նացիոնալիստներին և ամեն գույնի իմպերիալիստական ագենտներին: Խորհրդային ժողովուրդը փայլուն կերպով կատարեց ստալինյան յերկու հնգամյա պլանները. Իրագործված է յերկրորդ հնգամյակի հիմնական խնդիրը՝ լիովին լիկվիդացիայի յեն յենթարկված շահագործող դասակարգերը, վերջնականապես վոչնչացված են մարդու կողմից մարդու շահագործման պայմաններ առաջացնող պատճառները: Ստալինյան յերկու հնգամյակների տարիներին Խորհրդային Միությունը դարձել է ինդուստրիալ, հզոր պետություն, Նրա գյուղատնտեսությունը դարձել է աշխարհի ամենաառաջավորը և կոլտնտեսային կարգերն ամրապնդվել ու դարձել են սոցիալիստական հասարակության հզոր ուժը: Կենսագործելով ստալինյան յերկու հնգամյակները, մեր արդյունաբերության աճման տեմպերով և արտադրության տեխնիկայով հասանք և



անցանք կապիտալիստական մեծ յերկրներից. յերկրի ինդուստրացումը հնարավորություն տվեց խորհրդային ժողովրդին՝ ստեղծել հզոր ռազմական տեխնիկայով զինված անպարտելի Կարմիր Բանակ, կառուցվեց անդասակարգ սոցիալիստական հասարակություն և մեծ Ստալինի իմաստուն ղեկավարությամբ իրագործվում է աստիճանական անցումը դեպի կոմունիզմ: Յերրորդ հնգամյա պլանի կարեվորագույն խնդիրն է՝ լիակատար կոմունիզմին անցնելու խնդիրը:

Խորհրդային յերկրում գործում է աշխարհիս ամենադեմոկրատական Սահմանադրությունը— Ստալինյան Սահմանադրությունը: Ամրանում է ԽՍՀՄ-ում բնակվող ժողովուրդների ստալինյան բարեկամությունը: Ռուս մեծ ժողովրդի յեղբայրական օգնությամբ՝ մեր ազգային հանրապետությունները չտեսնված տեմպերով զարգացնում են իրենց տնտեսությունը, ձեվով ազգային ու բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Բազմազգ Խորհրդային Միությունը— ժողովուրդների անխախտ համագործակցության յերկիր է դարձել:

ԽՍՀՄ աշխատավորության ձեռք բերած

պատմական այս մեծ նվաճումներն օրենսդրական կարգով ամրացված են Ստալինյան մեծ Սահմանադրության մեջ:

Յերկրորդ հնգամյա պլանի (1933—1937) հաջող կատարման հետևանքով ԽՍՀՄ-ում վերջնականապես լիկվիդացիայի յեն յենթարկված բոլոր շահագործող դասակարգերը: Արտադրության սոցիալիստական սիստեմը դարձել է տիրապետողը ԽՍՀՄ-ի ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ: Սրա հիման վրա փոխվել է նաև խորհրդային հասարակության դասակարգային կառուցվածքը: Դեռ 1937 թվին յերկրի բնակչության 94,4 տոկոսը ներգրավված եր սոցիալիստական տնտեսության մեջ:

ԽՍՀՄ-ն դարձել է տնտեսապես անկախ յերկիր· դեռ 1937 թվի վերջին ԽՍՀՄ արդյունաբերությունը նախապատերազմյանի համեմատությամբ, աճել եր ավելի քան 7 անգամ:

Նավթի հանույթը 1913 թվի 9,2 միլիոն տոննից 1938 թվին հասավ 33,5 միլիոն տոննի: Չուգունի ձուլումը 1938 թվին հասավ 16,3 միլիոն տոննի—1913 թվի համեմատությամբ ավելացել է 4 անգամ: Պողպատի արտադրությունը ավելացել է գրեթե 5 անգամ և կազմում է 20,3 միլիոն



տոնն: Մեքենաշինության արտադրանքը դեռ 1936 թվին հասավ 20,8 միլիարդ ռուբլու (1926—1927 թվերի գներով): Իսկ ցարական Ռուսաստանի ամբողջ մեքենաշինությունը 1913 թվին տվել է ընդամենը միայն 748 միլիոն ռուբլու արտադրանք (1926—1927 թվի գներով):

Մեզ մոտ կառուցվեցին ինդուստրիայի համաշխարհային գիգանտներ, ստեղծված են արդյունաբերության այնպիսի ճյուղեր, վորոնք չկային ցարական Ռուսաստանում: Վիթխարի հաջողություններ յեն ձեռք բերվել ելեկտրիֆիկացիայի ասպարեզում, վորը Լենինը համարում եր յերկրի սոցիալիստական վերակառուցման հիմքը: Ստալինյան յերկու հնգամյակների շնորհիվ մեր յերկիրը ելեկտրոեներգիայի արտադրության գծով Յեվրոպայում բռնում է յերկրորդ, իսկ աշխարհում յերրորդ տեղը: Մենք այժմ ունենք մեր տրակտորաշինությունը, կոմբայնաշինությունը, դազգյահաշինությունը, մեր ավտոմոբիլային ու քիմիական արդյունաբերությունը, գյուղատնտեսական մեքենաշինությունը, հզոր ավիացիոն արդյունաբերությունը և այլն:

ԽՍՀՄ-ն աշխարհիս խոշորագույն արդյունաբերական յերկրներից մեկն է:

Մեր մեքենաշինարարական արդյունաբերությունը գյուղատնտեսությանը զինեց ամենահարուստ տեխնիկայով: Կատարվեց ընկեր Լենինի ցանկությունը՝ գյուղին 100 հազար տրակտոր տալու մասին: 1938 թվին սոցիալիստական դաշտերում աշխատում եյին արդեն 470 հազար տրակտոր, 120 հազար կոմբայն և հարյուր հազարավոր ուրիշ գյուղատնտեսական բարդ մեքենաներ: Շնորհիվ գյուղատնտեսության մեջ մտցված տեխնիկայի և ագրոտեխնիկայի, աճել ե կոլտնտեսային դաշտերի բերքատվությունը: Կոլտնտեսական մասսաները հաջողությամբ կատարում են ընկեր Ստալինի առաջադրանքը յերկրին 7—8 միլիարդ փութ հացահատիկ տալու մասին: Մեզ մոտ ներկայումս շատ միլիոնատեր կոլտնտեսություններ կան և տարեց-տարի աճում ե նրանց թիվը:

Սոցիալիստական գյուղի աճման ու զարգացման փայլուն որինակն ե 1939 թվին Մոսկվայում բացված Գյուղատնտեսական ցուցահանդեսը, վորտեղ ցուցադրվեցին «հողի հանրային, կոլեկտիվ, ընկերային, արտելային մշակման առավելությունները» (Լենին): Կոլտնտեսային կարգը հաղթանակեց. կոլտնտեսական մասսաները սո-



ցիալիզմ կառուցողների ակտիվ մասնակիցները դարձան և նրանք ապրում են ունեվոր, յերջանիկ ու կուլտուրական կյանքով:

Յերկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման լենինյան-ստալինյան քաղաքականության հաղթանակի շնորհիվ, սոցիալիզմը մտել ե ամբողջ ժողովրդի կենցաղի մեջ: Աշխատանքը մեզ մոտ դարձել ե «պատվի գործ, փառքի գործ, արիության ու հերոսության գործ» (Ստալին):

Լենինը սովորեցնում եր՝ «կապիտալիզմը կարող ե վերջնականապես պարտվել և վերջնականապես կպարտվի նրանով, վոր սոցիալիզմը կստեղծի աշխատանքի նոր, շատ ավելի բարձր արտադրողականություն»:[1]) Ստալինյան հնգամյակները բերին նոր տեխնիկա, բարեկեցության նոր աճ և ստախանովյան հզոր շարժում: Ստախանովյան շարժումը ջարդ ու փշուր արեց արտադրական հին նորմաները և աշխատանքի արտադրողականությունը բարձրացրեց հըսկայական բարձրության:

ԽՍՀՄ-ն առաջավոր կուլտուրայի յերկիր

1) Լենին, հատ. 24-րդ, եջ՝ 342:

է: ԽՍՀՄ-ի աշխատավորներն ազատագրվելով կապիտալիստական ստրկությունից, ստեղծել են իրենց կուլտուրան, գիտությունն ու արվեստը: Տասնյակ հազարավոր նոր դպրոցներ, հարյուրավոր բարձրագույն ուսումնական հաստատություններն ապահովում են ժողովրդական կրթության, կուլտուրայի և արվեստի ծաղկումը: 33 միլիոն յերեխաներ և 600 հազար ուսանողներ սովորում են դպրոցներում և ԲՈՒՀ-երում: Կրթության ինչպես նաև աշխատավորների մյուս իրավունքները, վորոնք նվաճել են նրանք, գրի յեն առնված Ստալինյան մեծ Սահմանադրության մեջ: Մեր գիտնականների նորանոր հայտնագործությունները, բևեռախույզների հերոսությունները, մեր հերոսական օդաչուների թռիչքները նոր էջեր բաց արին համաշխարհային կուլտուրայի պատմության մեջ: Կուլտուրական հեղափոխությունն ընդգրկել է մեր անծայրածիր յերկրի բոլոր անկյունները: ԽՍՀՄ-ն դարձել է ամենաառաջավոր կուլտուրայի, գիտության յերկիր:

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ ԽՍՀՄ-ՈՒՄ

Յերեք տարի անցավ այն որից, յերբ Խորհուրդների համամիութենական 8-րդ



արտակարգ համագումարը հաստատեց ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրությունը: Մեր աշխատավորները այդ Սահմանադրությունը կոչում են նրա ստեղծող մեծ Ստալինի անունով— Ստալինյան Սահմանադրություն:

Այս Սահմանադրությունը ամենադեմոկրատական Սահմանադրությունն է աշխարհում: Ընկեր Լենինը դեռ 1918 թ. «Դեմոկրատիայի և դիկտատուրայի մասին» գրած իր հոդվածում խոսելով պրոլետարիատի դիկտատուրայի մասին, ասում է. «Դա կլինի այն, վոր հարուստներին ծառայող դեմոկրատիային կփոխարինի չքավորներին ծառայող դեմոկրատիան: Դա կլինի այն, վոր փոքրամասնությանը, շահագործողներին ծառայող՝ ժողովների և մամուլի ազատությանը կփոխարինի բնակչության մեծամասնությանը, աշխատավորներին ծառայող ժողովների և մամուլի ազատությունը: Դա կլինի դեմոկրատիայի հսկայական, համաշխարհային պատմական մի լայնացումը, նրա փոխարկումը կեղծիքից ճշմարտության, մարդկության ազատագրումը կապիտալի կապանքներից...»:[1])

Ստալինյան Սահմանադրությունն ապա-

1) Լենին, Ընտիր յերկեր, հ. 2-րդ, եջ՝ 391—392:

է: ԽՍՀՄ-ի աշխատավորներն ազատագրվելով կապիտալիստական ստրկությունից, ստեղծել են իրենց կուլտուրան, գիտությունն ու արվեստը: Տասնյակ հազարավոր նոր դպրոցներ, հարյուրավոր բարձրագույն ուսումնական հաստատություններն ապահովում են ժողովրդական կրթության, կուլտուրայի և արվեստի ծաղկումը: 33 միլիոն յերեխաներ և 600 հազար ուսանողներ սովորում են դպրոցներում և ԲՈՒՀ-երում: Կրթության ինչպես նաև աշխատավորների մյուս իրավունքները, վորոնք նվաճել են նրանք, գրի յեն առնված Ստալինյան մեծ Սահմանադրության մեջ: Մեր գիտնականների նորանոր հայտնագործությունները, բևեռախույզների հերոսությունները, մեր հերոսական օդաչուների թռիչքները նոր եջեր բաց արին համաշխարհային կուլտուրայի պատմության մեջ: Կուլտուրական հեղափոխությունն ընդգրկել է մեր անծայրածիր յերկրի բոլոր անկյունները: ԽՍՀՄ-ն դարձել է ամենաառաջավոր կուլտուրայի, գիտության յերկիր:

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ ԽՍՀՄ-ՈՒՄ

Յերեք տարի անցավ այն որից, յերբ Խորհուրդների համամիութենական 8-րդ



արտակարգ համագումարը հաստատեց ԽՍՀՄ-ի նոր Սահմանադրությունը: Մեր աշխատավորները այդ Սահմանադրությունը կոչում են նրա ստեղծող մեծ Ստալինի անունով— Ստալինյան Սահմանադրություն:

Այս Սահմանադրությունը ամենադեմոկրատական Սահմանադրությունն է աշխարհում: Ընկեր Լենինը դեռ 1918 թ. «Դեմոկրատիայի և դիկտատուրայի մասին» գրած իր հոդվածում խոսելով պրոլետարիատի դիկտատուրայի մասին, ասում է. «Դա կլինի այն, վոր հարուստներին ծառայող դեմոկրատիային կփոխարինի չքավորներին ծառայող դեմոկրատիան: Դա կլինի այն, վոր փոքրամասնությանը, շահագործողներին ծառայող՝ ժողովների և մամուլի ազատությանը կփոխարինի բնակչության մեծամասնության, աշխատավորներին ծառայող ժողովների և մամուլի ազատությունը: Դա կլինի դեմոկրատիայի հսկայական, համաշխարհային պատմական մի լայնացումը, նրա փոխարկումը կեղծիքից ճշմարտության, մարդկության ազատագրումը կապիտալի կապանքներից...»:[1)]

Ստալինյան Սահմանադրությունն ապա-

---

1) Լենին, Ընտիր յերկեր, հ. 2-րդ, եջ՝ 391—392:

հոլեց ամենալայն դեմոկրատիա ԽՍՀՄ-ի աշխատավորների համար: Սոցիալիստական դեմոկրատիզմի հաղթանակն իր վառ արտահայտությունը գտավ մեր ժողովուրդների քաղաքական և բարոյական միասնության մեջ, վորի փայլուն ապացույցն եր ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի և միութենական հանրապետությունների Գերագույն Խորհուրդների ընտրությունները: Խորհրդային Միության բոլոր քաղաքացիներն առանց ռասայի ու ազգության խտրության ամենալայն կերպով մասնակցում են յերկրի քաղաքական և տնտեսական կյանքին, դրա մեջ է դեմոկրատիայի հսկայական, համաշխարհային պատմական լայնացումը, դրա մեջ է սոցիալիստական դեմոկրատիզմի փայլուն հաղթանակներից մեկը:

Անցել է մեկ տարի բոլշևիկների կուսակցության պատմական 18-րդ համագումարից: Ընկեր Ստալինի զեկուցումը և համագումարի կողմից ընդունված ստալինյան յերրորդ հնգամյա պլանը, Խորհուրդների Յերկրի ժողովրդի համար ուղեցույց դարձան հանուն սոցիալիստական շինարարության հետագա հաջողությունների մղվող պայքարում:

Համագումարի վորոշումները զինեցին



բանվոր դասակարգին, կոլխոզային գյուղացիությանը, խորհրդային ինտելիգենցիային՝ հաջողությամբ լուծելու բոլոր այն հարցերը, վորոնք առաջանում են մեր յերկրը սոցիալիզմից աստիճանաբար կոմունիստական հասարակարգին անցնելու պայմաններում:

Այս մեկ տարին խոշոր հաջողությունների տարի յեր: Հաջողություններ, վորոնք ձեռք են բերված վո՛չ միայն Խորհրդային Միության արտաքին քաղաքականության, միջազգային դիպլոմատիայի վողջ բնագավառում, մեր յերկրի ժողովուրդների քաղաքական-բարոյական միասնության ե՛լ ավելի ամրապնդման գործում, այլ և խորհրդային ինդուստրիայի, տրանսպորտի, գյուղատնտեսության և կուլտուրական շինարարության բոլոր ֆրոնտներում, ու խորհրդային ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում:

1939 թվին պետական արդյունաբերության միութենական և միութենական հանրապետությունների ժողկոմատների արտադրանքը 1938 թվի համեմատությամբ աճել է 14%-ով: Այդ աճը գերազանցել է 1938 թվի աճման տեմպին. 1939 թվին ձեռք բեր-

ված արտադրության այդ աճն անցնում է յերրորդ հնգամյակի առաջադրանքից, վորտեղ նախատեսված է արտադրանքի աճ 14%: Արդյունաբերության ընդհանուր աճի մեջ պաշտպանական արդյունաբերությունը 1939 թվին տալիս է 46,5%-ի աճ, 1938 թվի համեմատությամբ: Ծանր արդյունաբերության բոլոր ճյուղերի զարգացման հետ միասին զարգացել ու աճել է սպառման ապրանքների արտադրությունը, վորը գնում է բնակչության պահանջը բավարարելու համար: Առանձին ժողկոմատների գծով, ինչպես որինակ՝ Տեղական արդյունաբերության ժողկոմատի գծով արտադրության աճը կազմում է 12%: Մսի և կաթի արդյունաբերության ժողկոմատի արտադրանքի աճը՝ 14,2%, արհեստագործական կոոպերացիայի գծով՝ 21% և այլն:

Յերբ մենք անցել ենք գլխավոր կապիտալիստական յերկրներից արտադրության տեխնիկայի բնագավառում և արդյունաբերության աճման տեմպերի տեսակետից, անհրաժեշտ է ե՛լ ավելի բարձրացնել աշխատանքի արտադրողականու-



թյունը, ավելի կատարելագործել արտադրության տեխնիկան, վորպեսզի անցնենք այդ յերկրներից նաև տնտեսապես: Այս խնդրի հաջող կատարման համար, անհրաժեշտ է ե՛լ ավելի բարձրացնել մեր աշխատավոր մասսաների ենտուզիազմը, զարգացնել նրանց ձեռներեցությունն ու ակտիվությունը, ե՛լ ավելի մեծ թափ տալ սոցիալիստական մրցությանը և նրա բարձր ձևի՝ ստախանովյան շարժման ծավալմանը:

Սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակները ձեռք են բերված բոլշևիկյան կուսակցության ղեկավարությամբ: Դրանք կուսակցության կատարած վիթխարի աշխատանքի արդյունքն են, ընկեր Ստալինի հանճարեղ կանխատեսության և ղեկավարության արդյունքը: Մեր հաջողությունների արդյունք են ժողովրդի վոխերիմ թշնամիների— տրոցկիստական-բուխարինական լրտեսների, վնասարարների, դիվերսանտների ու մարդասպանների բանդայի ջախջախման, վորոնք փորձում եյին

անդամահատել մեր հայրենիքը, վերականգնել կապիտալիզմը և խորհրդային ազատ ժողովրդին դարձնել կապիտալի ստրուկներ:

Այսօր, մայիսի մեկի օրը մեր աշխատավորությունը կրկին ու կրկին անգամ ցույց կտա իր բարոյական ու քաղաքական միասնությունը, իր համախմբվածությունը Լենինի–Ստալինի կուսակցության շուրջը, կոմունիզմի դրոշի շուրջը, փառքով կատարելու համար այն մեծ խնդիրները, որոնք առաջադրել է բոլշևիկների 18-րդ համագումարը:

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԸ 2-ՐԴ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ԴԵՄ ՊԱՅՔԱՐՈՂ ԱՌԱՋԱՎՈՐ ՄԱՐՏԻԿՆ Է

Կապիտալիստական յերկրների աշխատավորները մայիսի 1-ը դիմավորում են խորացող տնտեսական ճգնաժամի և յերկրորդ իմպերիալիստական պատերազմի իրադրության պայմաններում:

«Անգլիայի, Ֆրանսիայի և Գերմանիայի կառավարող դասակարգերը,— ասված է Կոմինտերնի Գործկոմի 1939 թ. նոյեմբերի 6-ի կոչում,— պատերազմ են մղում հա-



մաշխարհային տիրապետության համար: Այդ պատերազմը շարունակությունն է կապիտալիզմի բանակում տարվող իմպերիալիստական բազմամյա վեճի: Յերեք ամենահարուստ պետությունները—Անգլիան, Ֆրանսիան և ԱՄՆ-ը— տիրում են համաշխարհային կարևորագույն ուղիներին և վաճառահանման շուկաներին: Նրանք զավթել են հումքի հիմնական աղբյուրները: Նրանց ձեռքումն են գտնվում հսկայական տնտեսական ռեսուրսները: Նրանք իրենց են յենթարկում մարդկության ավելի քան կես մասին: Աշխատավորների շահագործումը, գաղութների ճնշված ժողովուրդների շահագործումը նրանք քողարկում են դեմոկրատիայի կեղծավոր դրոշով, որպեսզի դրանով ավելի հեշտ խաբեն մասսաներին: Նրանց համաշխարհային տիրապետության դեմ, իրենց տիրակալության համար պայքարում են մյուս կապիտալիստական պետությունները, որոնք ավելի ուշ են թևակոխել գաղութային էքսպանսիայի ասպարեզը: Նրանք կամենում են իրենց օգտին վերաբաժանել հումքի, պարենի աղբյուրները, վոսկու պաշարները, գաղութների մարդկային մասսիվները, Այդպիսին է այս պատերազմի, անարդա-

րացի պատերազմի, ռեակցիոն, իմպերիալիստական պատերազմի բուն իմաստը: Այս պատերազմի համար մեղավոր են բոլոր կապիտալիստական կառավարությունները և առաջին հերթին՝ պատերազմող պետությունների կառավարող դասակարգերը»:

Այս պատերազմը վիթխարի միջոցներ է կլանում: Ֆրանսիան պատերազմի վրա ծախսում է օրական 1 միլիարդ ֆրանկ, իսկ Անգլիան՝ ավելի քան 6 միլիոն ֆունտ ստերլինգ, այսինքն՝ կրկնապատիկ ավելի, քան ծախսում էր առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ:

Բայց միաժամանակ պատերազմը մեծ հասույթներ է բերում կապիտալիստներին: Հսկայական օգուտ են ստանում ռազմական զերատեսչության մատակարարները, բորսայական գործարարները, սպեկուլյանտները: Մի քանի հազար անգլիական ֆիրմաներ կան ռազմական մինիստրության պատվերները կատարող կոնտրագենտների ցուցակում:

Անգլիայի «Ս. Սմիտ և վորդիներ» ֆիրմայի մոտորաշինարարական խոշորագույն ձեռնարկությունների շահույթները կրկնապատկվել են: Պատերազմի ժամանակաշրը-



ջանում կրկնապատկվել են «Նյուպորտ» ֆիրմայի և այլոց հասույթները:

Աճում են կապիտալիստների յեկամուտները պատերազմին չմասնակցող յերկրներում: «Յունայտեդ Էյրկրաֆտ կորպորեյշն» ավիացիոն արդյունաբերական ընկերությունը (ԱՄՆ) 1939 թվին ստացավ ավելի քան 9 միլիոն դոլլար շահույթ, 1938 թվի 5 միլիոնի դիմաց:

Գնալով ավելանում են կապիտալիստական ձեռնարկատերերի շահույթները աճում են ռազմական յեկամուտները՝ աշխատավորների խիստ վատթարացող դրությանը զուգընթաց: Արագ աճում է գործազրկությունը: Հենց միայն Ամերիկայի Միացյալ Նահանգներում հաշվվում է 12 միլիոն գործազուրկ:

ԱՄՆ-ում կազմվել է 40 տարեկանից բարձր գործազուրկների հսկայական մի բանակ: Բանվորից մզելով նրա հյութերը, նրան օգտագործելով մինչև վերջը, ձեռնարկատերը բանվորին փողոց է շպրտում: Ամերիկական գործարանների դռների վրա կախված են այսպիսի ցուցանակներ—«40 տարեկանից բարձր՝ աշխատանքի չի ընդունվում»: Ցեվ ապրելու իրավունքից զրկված միլիոնավոր մարդիկ թափառում

են Ամերիկայի Միացյալ Նահանգների ճանապարհների վրա:

Ավելի լավ չէ՛ յերիտասարդների դրությունը: 1939 թվի նոյեմբերին Նյու-Յորքում կայացավ յերիտասարդության կոնֆերենցիա: Այդ կոնֆերենցիայի վորոշման մեջ ասված է, վոր ԱՄՆ-ում 21 միլիոն յերիտասարդներից ավելի քան 5 միլիոնն աշխատանք չունեն և դպրոցից դուրս են մնացել:

Պատերազմող և չեզոք յերկրների խոշոր բուրժուազիան ռազմական ռեժիմի պայմաններն ոգտագործեց ծավալուն հարձակում սկսելու համար աշխատավորական մասսաների քաղաքական իրավունքների և կենսական մակարդակի դեմ: Ֆրանսիական բանվորները 1940 թվի հունվարի 1-ից հետո, աշխատելով շաբաթական 60 ժամ, ստանում են 45-ժամյա աշխատավարձ:

Աճում են պատերազմական հարկերն աշխատավորների վրա: Իրենց վաստակի զգալի մասը ֆրանսիական բանվորներն ստիպված են տալ պատերազմական հարկի ձևով: Աճում է թանկությունը: Պատերազմի առաջին յերեք ամսում մթերքների



գները պատերազմող և չեզոք յերկրներում ավելացան 20—70 տոկոսով:

Բոլոր կապիտալիստական յերկրներում լայնանում է շարժումն իմպերիալիստական պատերազմի դեմ, խաղաղության համար: Որը-որին ավելանում է բանվորական և աշխատավորական այլ կազմակերպությունների թիվը, վորոնք իրենց ձայնն են բարձրացնում ընդդեմ իմպերիալիստական պատերազմի:

Ֆրանսիական ռեակցիոներները բանտ են նետել 7 հազար կոմունիստների, համակենտրոնացման ճամբարներն են նետել 200 հազար իսպանացի փախստականների—տղամարդ, կին և յերեխա: Սակայն, վոստիկանական հալածանքներն ու տեռորը չփշրեցին ֆրանսիական բանվորների կամքը, բուրժուազիային չհաջողվեց խլացնել պատերազմի դեմ, խաղաղության համար մարտնչողների ձայնը:

Ֆրանսիական կոմունիստական կուսակցությունը կանգնած է մարտական դիրքերում:

Ֆրանսիական 44 կոմունիստ դեպուտատների դատավարությունը, վոր կայացավ մարտի 21-ից մինչև ապրիլի 2-ը, ըստ եյության հանդիսացավ ֆրանսիական ժո-

ովրդի դատաստանը պատերազմի հրձիգ-
երի հանդեպ, ռեակցիայի հանդեպ:

Բուրժուազիան դատավարության առաջին
րից հետո չտարեց հետագա նիստերը
ոխադրել փակ դռների հետևը: Նա վա-
խենում էր մեղադրյալների քաջարի ճառե-
րից, որոնք մերկացնում էին Ֆրանսիա-
ի ներկա ռեժիմը, սպեկուլյանտների և
ազմական մատակարարների հեքիաթային
հարստացումը, դիվանագիտության ինտ-
րիգները, կառավարող դասակարգերի մե-
քենայությունները և Բլյումի ու Ֆինան-
սական կապիտալի մյուս պալատական
«սոցիալիստ» լակեյների լկտի դավաճա-
նությունը: Պաշտպաններին մերժեցին
վկաներ կանչել: Դատարանն իր մեղա-
դրանքը հիմնեց կեղծ փաստաթղթերի
վրա:

Ժողովրդի ընտրյալները — ֆրանսիական
պարլամենտի կոմունիստ դեպուտատները
դատապարտվեցին յերկարատև բանտար-
կության, դրամական տուգանքների և ի-
րավազրկման:

Ինը մեղադրյալների, այդ թվում ֆրան-
սիական կոմունիստական կուսակցության
ղեկավար քարտուղար ընկ. Մորիս Տորե-
զին, Քաղբյուրոյի անդամ Ժակ Դյուկլոյին



և ուրիշների, դատեցին հեռակայորեն: Նը-
րանց մեղադրում են այլ գործով, «դա-
վաճանության» մեղադրանքով, մահապա-
տիժ սպառնացող հոդվածներով:

Ֆրանսիայի կառավարությունը մշակեց
հրեշային մի օրինագիծ, որի համաձայն՝
դատավճիռ է կայացվելու նույնիսկ կո-
մունիստական գրականություն տարածե-
լու համար: Բայց այդ բոլոր դաժանական
ռեպրեսիաները, որոնք արդյունք են ա-
պագայի նկատմամբ բուրժուազիայի զգա-
ցած վախի, ի վիճակի չեն թուլացնել
ֆրանսիական բանվորների անձնուրաց
պայքարը:

«Նորդպրես» գործակալության թղթակ-
ցին տված հինտերվյուի ժամանակ ֆրան-
սիական կոմունիստական կուսակցության
Քաղբյուրոյի անդամ ընկ. Ժակ Դյուկլոն
հայտարարեց. «Մենք ընդդծում ենք, որ
յեթե պատերազմի ամենածանր բեռն ընկ-
նում է բանվորների և մանր մարդկանց
վրա, ապա արդյունաբերողներին այս պա-
տերազմը հսկայական շահույթներ է տվել:

Մենք պաշտպանում ենք գյուղացիներին:
Մենք պահանջում ենք, որ մոբիլիզա-
ցիայի յենթարկված գյուղացիներին հնա-
րավորություն տան տուն վերադառնալ և

անմիջապես նրանց վճարեն արդարացի հատուցում նրանցից կատարված ռեկվիզիցիայի դիմաց: Մենք պահանջում ենք բարձրացնել մոբիլիզացիայի յենթարկված գյուղացիների կանանց նպաստները, վորոնք (կանայք) այժմ ստանում են վողորմելի չորս և կես ֆրանկ...

Մենք պաշտպանում ենք ձեռնարկություններում աշխատող կանանց և յերիտասարդներին ձեռնարկատերերից, վորոնք նրանց վզին են փաթաթում աշխատանքի այնպիսի պայմաններ, վորոնք խիստ բարձր են նրանց ֆիզիկական ուժերից: Մենք պաշտպանում ենք գործազուրկներին, վորոնց նպաստը կրճատել են խայտառակ չափերով, մինչդեռ գներն ավելացնում են: Մենք պաշտպանում ենք ծառայողներին, վորոնց զրկել են նախքան պատերազմը ունեցած ամեն տեսակի յերաշխիքներից...

Մենք պաշտպանում ենք գաղութների ժողովուրդներին նրանց Ֆրանսիայի նահանգապետներից, վորոնք մտադիր են նրանց ոգտագործել վորպես ռեակցիայի հենարան յերկրի ներսում և վորպես հակախորհրդային յելույթի զորքեր՝ յերկրից դուրս»:

Կարճ ասած, ֆրանսիական կոմունիստա-



կան կուսակցությունը շարունակում է պայքարը հանուն հացի, խաղաղության և ազատության՝ ֆրանսիական ժողովրդի համար: Չնայած ամենադաժան ռեպրեսիաներին, «Յումանիտե»-ն և նրա հետ միասին մյուս կոմունիստական թերթերը շարունակում են լույս տեսնել:

«Կեցցե՛ Ստալինը: Կեցցե՛ Տորեզը: Կեցցե՛ հեղափոխությունը»,—այսպիսի մակագրություններ կարելի յե տեսնել Ֆրանսիայի շատ գործարաններում և հանքահորերում,—գրում է ռայոնական կոմունիստական ընդհատակյա թերթը՝ «Լանշենե»-ն: «Կորչի՛ իմպերիալիստական պատերազմը, պաշտպանեցեք սոցիալիզմի որորան, բոլոր աշխատավորների հայրենիք Խորհրդային Միությունը»,— այսպիսի վերնագրեր են զարդարում այս մարտական կոմունիստական ընդհատակյա թերթի առաջին եջը:

Լայնանում է հակապատերազմական շարժումն Անգլիայում: Լեյբորիստական, պրոֆմիութենական և կոոպերատիվ բազմաթիվ ստորին կազմակերպություններ վճռականորեն դեմ են արտահայտվել պատերազմին:

Լոնդոնում ռազմական մինիստրությունը

կից մոբիլիզացիայի յենթարկվածների ընտանիքներին օգնող կոմիտեն ամեն որ բազմաթիվ բողոքներ ե ստանում զինվորների կանանցից: «Դեյլի Ուորկեր»-ը հունվարի 11-ի համարում հաղորդում ե, վոր կենսաթոշակների մինիստրությունը ավելի քան 30 հազար դիմում ե ստացել զինվորների կանանցից:

Ստեպնիում, նույն Անգլիայում, ավելի քան 8 հազար տնային տնտեսուհիներ և ավելի քան 10 հազար կանայք —պրոֆմիության անդամներ—ստեղծել են թանկության դեմ և մոբիլիզացիայի յենթարկվածների ընտանիքների նյութական-կենցաղային պայմանների բարելավման համար պայքարող կոմիտե:

Ավստրալիայի աշխատավորները, ինչպես հաղորդում ե ամերիկական «Դեյլի Ուորկեր» թերթը, սկսում են ավելի ու ավելի բարձր բողոքել այն բանի դեմ, վոր իրենց յերկիրը մասնակցում ե պատերազմին՝ բրիտանական իմպերիալիզմի կողմից:

Թերթը բերում ե հետևյալ փաստերը:

Վիկտորիայի, Կուինսլենդի պրոֆմիությունների խորհուրդները և պրոֆմիությունների գավառական խորհուրդները բանաձևեր են հանել՝ պահանջելով դադա-



րեցնել պատերազմը և հրավիրել խաղաղության կոնֆերենցիա:

Ամբողջ Ավստրալիայի ջրային տրանսպորտի բանվորների միավորման ֆեդերալ կոմիտեն նույնպես կոչ ե անում անհապաղ դադարեցնել պատերազմը: Գրասենյակային ծառայողների միությունը Սիդնեյում, ձայների ճնշող մեծամասնությամբ մի բանաձև ընդունեց, վորը պահանջում ե անհապաղ հաշտություն կնքել, «անհնար դարձնելով պատերազմը գաղութների համար»:

Լոնդոնի ռադիոկայանը վերջերս հաղորդեց. «Յերեկ յերեկոյան մեր յերկրում յերկրորդ անգամ լսվեց խորհրդավոր կարճալիք ռադիո-հաղորդում: Առաջին անգամ այդ ռադիոկայանը յեթերում յերևաց անցյալ կիրակի: Այդ ռադիոկայանի հաղորդումն ուղղված ե կառավարության և պատերազմի դեմ»:

Անգլիայում ուժեղանում ե գործադուլային շարժումն աշխատավարձը բարձրացնելու լոզունգներով: Մեկը մյուսի հետևից պայքարի մեջ են մտնում բանվոր դասակարգի առանձին ջոկատները:

Լոնդոնի մետաղագործները վերջերս դիմեցին գործարանների ադմինիստրացիա-

կից մոբիլիզացիայի յենթարկվածների ընտանիքներին ոգնող կոմիտեն ամեն օր բազմաթիվ բողոքներ է ստանում զինվորների կանանցից: «Դեյլի Ուորկեր»-ը հունվարի 11-ի համարում հաղորդում է, վոր կենսաթոշակների մինիստրությունը ավելի քան 30 հազար դիմում է ստացել զինվորների կանանցից:

Ստեփնիում, նույն Անգլիայում, ավելի քան 8 հազար տնային տնտեսուհիներ և ավելի քան 10 հազար կանայք —պրոֆմիության անդամներ—ստեղծել են թանկության դեմ և մոբիլիզացիայի յենթարկվածների ընտանիքների նյութական-կենցաղային պայմանների բարելավման համար պայքարող կոմիտե:

Ավստրալիայի աշխատավորները, ինչպես հաղորդում է ամերիկական «Դեյլի Ուորկեր» թերթը, սկսում են ավելի ու ավելի բարձր բողոքել այն բանի դեմ, վոր իրենց յերկիրը մասնակցում է պատերազմին՝ բրիտանական իմպերիալիզմի կողմից:

Թերթը բերում է հետևյալ փաստերը:

Վիկտորիայի, Կուինսլենդի պրոֆմիությունների խորհուրդները և պրոֆմիությունների գավառական խորհուրդները բանաձևեր են հանել՝ պահանջելով դադա-



րեցնել պատերազմը և հրավիրել խաղաղության կոնֆերենցիա:

Ամբողջ Ավստրալիայի ջրային տրանսպորտի բանվորների միավորման ֆեդերալ կոմիտեն նույնպես կոչ է անում անհապաղ դադարեցնել պատերազմը: Գրասենյակային ծառայողների միությունը Սիդնեյում, ձայների ճնշող մեծամասնությամբ մի բանաձև ընդունեց, վորը պահանջում է անհապաղ հաշտություն կնքել, «անհնար դարձնելով պատերազմը գաղութների համար»:

Լոնդոնի ռադիոկայանը վերջերս հաղորդեց. «Յերեկ յերեկոյան մեր յերկրում յերկրորդ անգամ լսվեց խորհրդավոր կարճալիք ռադիո—հաղորդում: Առաջին անգամ այդ ռադիոկայանը յեթերում յերևաց անցյալ կիրակի: Այդ ռադիոկայանի հաղորդումն ուղղված է կառավարության և պատերազմի դեմ»:

Անգլիայում ուժեղանում է գործադուլային շարժումն աշխատավարձը բարձրացնելու լոզունգներով: Մեկը մյուսի հետևից պայքարի մեջ են մտնում բանվոր դասակարգի առանձին ջոկատները:

Լոնդոնի մետաղագործները վերջերս դիմեցին գործարանների ադմինիստրացիա-

յին՝ պահանջելով 10 շիլլինգի հավելում:

Կոմունալ բանվորների և ծառայողների ազգային պրոֆմիությունը, տրանսպորտի բանվորների պրոֆմիությունը ավելի քան 500 հազար կին-մետաղագործների անունից դիմեցին գործարանատերերին, պահանջելով բարձրացնել աշխատավարձը:

Այնտեղ, վորտեղ պրոֆմիությունների ոպորտունիստական ղեկավարությունն ըն-թանում ե ձեռնարկատերերի հետ համա-տեղ, բանվորները պահանջում են փոխել այդ ծառայողներին: «Դեյլի Ուորկըր»-ը հաղորդում ե, վոր յերկաթուղայինների ազգային միության Մանչեստրի ոկրուգային խորհուրդը, վորը ներկայացնում ե 25 հազար բանվորների, մի բանաձև ե ընդունել, վորը պահանջում ե միության գլխավոր քարտուղար Մարդենկի հրաժարականը և անվստահություն ե հայտնում գործկոմին՝ աշխատավարձի վերաբերյալ բանակցությունները ձգձգելու համար:

Անգլիայի կոմունիստական կուսակցության ԿԿ-ի դիմումի մեջ, վորը հրատարակվեց «Դեյլի Ուորկըր»-ում սույն թվի հունվարի 24-ին, ասված ե.

«Լեռնագործնե՛ր, մետաղագործնե՛ր, յերկաթուղայիննե՛ր, տրանսպորտի բանվորնե՛ր, մանածագործնե՛ր և կառուցող բան-



վորնե՛ր: Զինվորական շինել հագած բանվորների կանա՛յք և ծնողնե՛ր: Մենք ձեզ կոչ ենք անում ակտիվ կերպով մասնակցել մասսայական լայն կամպանիային՝ ապահովելու համար հետևյալը.

1. Աշխատավարձի բարձրացում աճող թանկությանը համապատասխան:

2. Մոբիլիզացիայի յենթարկվածների խնամքի տակ գտնվողներին տրվող նպաստների անհապաղ ավելացում:

3. Առողջապահության որգանների նորմալ գործունեության վերականում. բնակարանային, դպրոցական և հիվանդանոցային շինարարության վերականում...

Ապահովեցե՛ք ժողովրդի համար լավագույն կյանք: Հարուստներին հարկադրեցեք վճարել:

Կորչի՛ աշխատավարձի բարձրացման արգելանքը: Կորչի՛ պատերազմական վաստակը: Չքավորներին ազատեցեք գոտիներն ավելի պինդ ձիգ տալու անհրաժեշտությունից:

Հենց հիմա ել հաստատենք կառավարության և միլիոնատերերի դեմ ուղղված գործողությունների միասնությունն»:

Անգլիայի բուրժուական թերթերը գանգատվում են, թե աճում ե ժողովրդի դժ-

գոհությունը պատերազմից: «Նյու Լիդեր» թերթը հաղորդում ե ժողովրդի մեջ տիրող դժգոհության մասին: Թերթը գրում ե. մի հասարակ բանվոր զրույցի ժամանակ հայտարարեց— «Թո՛ղ Չերչիլը լեզուն իրեն քաշի, վորովհետև հենց վոր նա բերանը բաց ե անում, մի վորևե շոգենավ ե սուզվում»:

Ծավալվում ե հակապատերազմական շարժումը նաև ԱՄՆ-ում, Լատինական Ամերիկայի յերկրներում:

Բոլոր յերկրների աշխատավորները հավերժ անարգանքի սյունին են գամում Բլյումի, Ժուոյի, Սիտրինի և բուրժուական մյուս հավատարիմ ծառաների դավաճան բանդային, վորոնց դավաճանությունն այժմ հարյուրապատիկ ավելի սև ե, քան առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ, վորովհետև նրանք այժմ լկտի կերպով կոչ են անում պատերազմել բոլոր աշխատավորների հայրենիքի՝ Խորհրդային Միության դեմ:

Բոլոր յերկրների աշխատավորները, ճնշված գաղութների և կիսագաղութների ժողովուրդները, հերոսական Չինաստանի, Հնդկաստանի ժողովուրդները պայքարում են պատերազմի հրձիգների դեմ՝ շահագոր-



ծողների տիրապետությունը տապալելու համար:

Ներկա պատերազմն սկսվելուց հետո անգլիացիները հսկայական դժվարությունների հանդիպեցին Հնդկաստանում: Այդ դժվարությունները հանգում են այն բանին, վոր Հնդկաստանի 350 միլիոնանոց ժողովուրդը չի ցանկանում պատերազմել իրեն խորթ իմպերիալիստական շահերի համար և պահանջում ե Հնդկաստանին տալ լիակատար անկախություն:

Ժողովրդական լայն մասսաների այս պահանջներն արտահայտված են 4 միլիոնից ավելի անդամ ունեցող խոշորագույն քաղաքական կուսակցության— Հնդկական Ազգային կոնգրեսի դեկլարացիայում:

Պատերազմի և իմպերիալիստական քաղաքականության դեմ իրենց բողոքը Հնդկաստանի աշխատավորներն արտահայտում են խոշորագույն քաղաքական ցույցերով, գործադուլներով, անգլիական իշխանությունների դեմ ուղղված յելույթներով:

Հսկայական թափ ե ստացել ազգային-ազատագրական շարժումը Չինաստանում: Շուտով կլրանա յերեք տարին, ինչ չին ժողովուրդը պատերազմի յե յելել ընդդեմ ճապոնական իմպերիալիզմի, վորը յերա-

ղոհությունը պատերազմից: «Նյու Լիդեր» թերթը հաղորդում է ժողովրդի մեջ տիրող դժգոհության մասին: Թերթը գրում է. մի հասարակ բանվոր զրույցի ժամանակ հայտարարեց— «Թո՛ղ Չերչիլը լեզուն իրեն քաշի, որովհետև հենց որ նա բերանը բաց է անում, մի որևէ շոգենավ է սուզվում»:

Ծավալվում է հակապատերազմական շարժումը նաև ԱՄՆ-ում, Լատինական Ամերիկայի յերկրներում:

Բոլոր յերկրների աշխատավորները հավերժ անարգանքի սյունին են գամում Բլյումի, Ժուոյի, Միտրինի և բուրժուազիայի մյուս հավատարիմ ծառաների դավաճան բանդային, որոնց դավաճանությունն այժմ հարյուրապատիկ ավելի սև է, քան առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ, որովհետև նրանք այժմ լկտի կերպով կոչ են անում պատերազմել բոլոր աշխատավորների հայրենիքի՝ Խորհրդային Միության դեմ:

Բոլոր յերկրների աշխատավորները, ճնշված ազգությունների և կիսագաղութների ժողովուրդները, հերոսական Չինաստանի, Հնդկաստանի ժողովուրդները պայքարում են պատերազմի հրձիգների դեմ՝ շահագոր-



ծողների տիրապետությունը տապալելու համար:

Ներկա պատերազմն սկսվելուց հետո անգլիացիները հսկայական դժվարությունների հանդիպեցին Հնդկաստանում: Այդ դժվարությունները հանգում են այն բանին, որ Հնդկաստանի 350 միլիոնանոց ժողովուրդը չի ցանկանում պատերազմել իրեն խորթ իմպերիալիստական շահերի համար և պահանջում է Հնդկաստանին տալ լիակատար անկախություն:

Ժողովրդական լայն մասսաների այս պահանջներն արտահայտված են 4 միլիոնից ավելի անդամ ունեցող խոշորագույն քաղաքական կուսակցության— Հնդկական Ազգային կոնգրեսի դեկլարացիայում:

Պատերազմի և իմպերիալիստական քաղաքականության դեմ իրենց բողոքը Հնդկաստանի աշխատավորներն արտահայտում են խոշորագույն քաղաքական ցույցերով, գործադուլներով, անգլիական իշխանությունների դեմ ուղղված յելույթներով:

Հսկայական թափ է ստացել ազգային-ազատագրական շարժումը Չինաստանում: Շուտով կլրանա յերեք տարին, ինչ չին ժողովուրդը պատերազմի յե յելել ընդդեմ ճապոնական իմպերիալիզմի, որը յերա-

*գում է հնազանդեցնել աշխարհի ամենամեծ այդ յերկիրը:*

*Ճապոնական իմպերիալիստները Չինաստանում իրար հետեից պարտություն են կրում: Նրանց չի օգնում վո՛չ խաչորդությունն իմպերիալիստական յերկրների բուրժուական քաղաքականությունը, յերկրներ, վորոնք մատների արանքով են նայում Չինաստանի թալանմանը Ճապոնիայի կողմից, վոչ էլ հաջողության են հասնում Ճապոնիայի փորձերը՝ Չինաստանը ստրկացնելու «իրենց իսկ՝ չինացիների ձեռքով», այսինքն՝ չինական ժողովրդի միասնության պառակտումով: Ամբողջ հերոսական Չինաստանն անարգանքի սյունին է գամում ճապոնական մարիոնետ Վան Ցզին-վեյին, իր անեծքն է հղում չին ժողովրդի բոլոր թշնամիներին, վորոնք յերազում են ստրկացնել այդ մեծ յերկիրը:*

*1940 թվի մայիսի 1-ն ամբողջ աշխարհում կանցկենա իմպերիալիստական պատերազմի դեմ պայքարելու համար բանվոր դասակարգի բոլոր ուժերը մոբիլիզացիայի յենթարկելու նշանաբանով, ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգի ինտերնացիոնալ, յեղբայրական, պրոլետարական կապերը համայն*



*աշխարհի աշխատավորության հետ եվ ավելի ամրապնդելու նշանաբանով:*

Կեցցե՛ մայիսի 1-ը— միջազգային պրոլետարիատի հեղափոխական ուժերի մարտական ստուգատեսը:

Թո՛ղ ապրի և ամրապնդվի մեր հզոր հայրենիքը— Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը:

Կեցցե՛ Մարքսի-Էնգելսի-Լենինի-Ստալինի մեծ, անպարտելի դրոշը:

---

# ՄԱՅԻՍԻ 5-Ը ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՈՐՆ Է

(Համառոտ ակնարկ մամուլի որվա մասին)

Մոտենում է մամուլի որը: Մայիսի 5-ին լրանում է լենինյան-ստալինյան «ՊՐԱՎԴԱ»-յի 28-րդ տարին: Մամուլի որն առաջին անգամ տոնվել է 1914 թ.՝ «Պրավդա»-յի հիմնադրման 2-րդ տարեդարձին: Պետերբուրգի բանվորները հիմքը դնելով «Պրավդա»-յի, կատարեցին խոշոր գործ: «Պրավդա»-յի հիմնադրումը նշանակալից դեր խաղաց Ռուսաստանի հեղափոխական շարժման պատմության մեջ և նրա հիմնադրման որն ամեն տարի նշվում է, վորպես մամուլի տոնական համաժողովրդական որ: Մամուլի տոնը պետք է անցկացնել կազմակերպորեն, այն պետք է անցնի մամուլի աշխատանքներում գոյություն ունեցող թերությունների քննադատության,



թերթերի աշխատանքների հետագա բարելավման նշանաբանի տակ:

Մամուլի դերը հսկայական է յերկրի քաղաքական կյանքում: «Քաղաքական թերթը,— գրում էր Լենինը,— հիմնական միջոցներից մեկն է ժամանակակից հասարակության յուրաքանչյուր դասակարգի ձեռքում, յերկրի քաղաքական կյանքին մասնակցելու համար» (Յերկեր, հ. 16, եջ՝ 51):

Պրոլետարիատի՝ հանճարեղ առաջնորդներ՝ Մարքսը, Ենգելսը, Լենինը, Ստալինը միշտ բարձր են գնահատել բանվորական մամուլի դերը: Առանց հեղափոխական մամուլի, դժվար կլիներ հեղափոխական կուսակցության համար ամենորյա ուժեղ կապ հաստատել աշխատավորական մասսաների հետ:

«Մամուլը,— ասում է ընկեր Ստալինը կուսակցության 12-րդ համագումարում,— միակ զենքն է, վորի ոգնությամբ կուսակցությունն ամեն որ, ամեն ժամ խոսում է բանվոր դասակարգի հետ նրա՝ իրեն հարկավոր լեզվով: Կուսակցության և դասակարգի միջև հոգևոր թելեր ձգելու ուրիշ միջոցներ, մի ուրիշ այդպիսի ճկուն ապարատ բնության մեջ չկա»:

Բոլշևիկյան մամուլը մարքսիզմ-լենինիզմի կարևորագույն զենքն է՝ պրոպագանդայի տրիբունը: Մեր բոլշևիկյան մամուլի պատմությունն ըստ եության մեր կուսակցության պատմությունն է, հեղափոխության պատմությունը:

Բանվորական մամուլը Ռուսաստանում ծնունդ առավ 1895—96 թվականների պետերբուրգյան հռչակավոր գործադուլների ժամանակվանից: Բանվորական-մասսայական շարժման հենց սկզբից մեր յերկրում հանդես յեկան հեկտոգրաֆիկ, գաղտնի տարածվող թերթիկները, վորոնք նվիրված էին արդյունաբերության զանազան ճյուղերի բանվորների կարիքների ու պահանջների շարադրմանը: Իրենք՝ բանվորները մեծ ակտիվություն էին ցուցաբերում այդ թերթիկների կազմման գործում:

Թերթիկների հրատարակմանը մասնակցող բանվորներից՝ Լենինը հատկապես նշում էր Վասիլի Անդրեյևիչ Շելգունովին և իսկրայական— բոլշևիկ Իվան Վասիլյևիչ Բաբուշկինին:

Բանվորական թերթիկները յերևան էին բերում բանվորների կեղեքման փաստեր և



հսկայական զայրույթ էին առաջացնում բոլոր բանվորների մեջ գործարաններում և ֆաբրիկաներում: Յեվ վորովհետև բոլոր բանվորների կարիքներն ու աղետներն ընդհանուր էին, ապա բանվորական կյանքի մասին ճշմարիտ, հստակ ու համարձակ խոսքը կազմակերպում և համախմբում էր նրանց՝ ընդդեմ կապիտալիզմի:

«Բանվոր դասակարգի ազատագրման պայքարի միությունը» ընդլայնելով տպագրական ցանցը, 1896 թվի մայիսմեկյան թերթիկը տպագրում է 2000 որինակից և տարածում բանվորական լայն շրջաններում: Լենինյան թերթիկներն ու բրոշյուրները բացառիկ նշանակություն ունեցան Ռուսաստանում՝ հեղափոխական շարժման ծավալման համար: Առաջավոր բանվորների մեջ նեղ պրոպագանդա մղելուց մասսայական լայն ագիտացիային անցնելու հետևանքով, անհրաժեշտ էր կուսակցական քաղաքական թերթ ստեղծել: Լենինը նախապատրաստեց այդպիսի «Ռաբոչեյե դելո» թերթի առաջին համարը, սակայն վոստիկանությունը բռնագրավեց բոլոր նյութերը և բանտարկեց Լենինին ու Պետերբուրգի մյուս ականավոր հեղափոխականներին:

Միջազգային օպորտունիզմը, նրա ռուսական այլակերպությունը — «էկոնոմիզմը», «լեգալ մարքսիստները» վտանգավոր ազդեցություն էին տարածում բանվորական շարժման մեջ, ամեն կերպ ջանալով հեռու պահել բանվոր դասակարգին քաղաքական պայքարից: Լենինը դեռ ևս սիբիրյան աքսորում գրեց 17-ի բողոքը, մերկացնելով «էկոնոմիզմի» հակահեղափոխական էությունը: 1900-ական թվականներին, կուսակցության կազմակերպման շրջանում, երբ Ռուսաստանում արդեն գոյություն ունեցող մարքսիստական բազմաթիվ մանր խմբակներն ու կազմակերպությունները դեռևս միմյանց հետ կապված չէին, այդ ժամանակին, երբ ընկեր Ստալինի արտահայտությամբ՝ «տնայնագործականությունը և խմբակայնությունը քայքայում էին կուսակցությունը վերից վար, երբ գաղափարական տարընթացությունը կուսակցության ներքին կյանքի բնորոշ գիծն էր կազմում», համառուսական անլեգալ լրագրի ստեղծումը ռուսական հեղափոխական մարքսիստների հիմնական խնդիրն էր» («ՀամԿ(բ)Կ պատմ. համ. դասընթաց», էջ 33):

Լենինը հեռավոր սիբիրյան աքսորից ռու-



սական սոցիալիստներին գրում էր, որ՝ «գործողության ծրագիրը, ցանկալի կազմակերպության ստեղծելու առաջին գործնական քայլը, վերջապես, հիմնական թելը, որից բռնելով մենք կարող էինք անշեղորեն զարգացնել, խորացնել և ընդլայնել այդ կազմակերպությունը — պետք է լինի համառուսական քաղաքական թերթի հիմնադրումը» (Երկեր, հ. 4, էջ 110):

Լենինը վերադառնալով աքսորից, սկսեց նախապատրաստել թերթի հրատարակումը: 1900 թ. դեկտեմբերի 24-ին Ժընևում լույս տեսավ լենինյան «Իսկրա»-յի առաջին համարը: Լենինն ստեղծեց նոր տիպի թերթ, որի խնդիրն էր՝ ստեղծել նոր տիպի բանվորական կուսակցություն: Լենինը սովորեցնում էր, որ «թերթը վոչ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ ու կոլեկտիվ ագիտատոր է, այլև կոլեկտիվ կազմակերպիչ»: (Երկեր, հատոր 4-րդ, էջ 487):

«Իսկրա»-յի խմբագրության կազմի մեջ մտան Լենինը, Մարտովը, Պոտրեսովը, «Աշխատանքի ազատագրման» խմբակի յերեք անդամները՝ Պլեխանովը, Զասուլիչը, Աքսելրոդը:

Լենինյան «Իսկրա»-ն դարձավ Ռուսաստանի բանվորական շարժման մարտական օրգանը: Լենինյան «Իսկրա»-յի և լենինյան աշխատությունների («Ի՞նչ անել» և այլն) պատմական դերը կայանում է նրանում, վոր նրանք ջախջախեցին «էկոնոմիզմը», եսերական, նարոդնիկական տեռորիզմը, մշակեցին բանվորական կուսակցության ծրագիրն ու տակտիկան: «Իսկրա»-ն դաստիարակեց պրոֆեսիոնալ հեղափոխականների այնպիսի կադրեր, ինչպիսին՝ ժողովրդական հերոս Իվան Վասիլևիչ Բաբուշկինն էր: Վերջապես, նա նախապատրաստեց կուսակցության 2-րդ համագումարը, վորը շրջադարձային կետ հանդիսացավ բանվորական շարժման մեջ:

1901 թվի սեպտեմբերից ընկեր Ստալինի ղեկավարությամբ Անդրկովկասում լույս է տեսնում «Բրձոլա» թերթը, վորն իսկրայական ուղղություն ունեցող առաջին թերթն էր Անդրկովկասում: Լենինյան «Իսկրա»-ն ջերմորեն վողջունում էր իր կրտսեր գինակցի մարտական աշխատանքը, Թիֆլիսում ռուսերեն, վրացերեն ու հայերեն լեզուներով լույս տեսնող պրոկլամացիաները:



Խմբագրության ներսում մի շարք սկզբունքային հարցերում, կուսակցության ծրագրի հարցերի շուրջը, վերաբերմունքը դեպի լիբերալները, պրոլետարիատի դիկտատուրայի ու հեգեմոնիայի հարցերում գոյություն ունեին լուրջ տարաձայնություններ, վորոնք կուսակցության 2-րդ համագումարում յերևան յեկան, վորպես իրար հակառակ քաղաքական հոսանքներ— բոլշևիզմ և մենշևիզմ:

Պլեխանովը դավաճանեց բանվոր դասակարգին և «Իսկրա»-ն 52-րդ համարից անցավ մենշևիկների ձեռքը: Մենշևիկյան «Իսկրա»-ն դարձավ անսկզբունք, մասսաներից կտրված թերթ:

Լենինն առաջ էր քաշում կուսակցական մամուլի յերկու հատկանիշ— կուսակցականության սկզբունքը և մշտական օրգանական կապը մասսաների հետ:

1904 թվի վերջին հյուսիսային, հարավային և կովկասյան կուսակցական կոնֆերանսները դատապարտեցին կուսակցական կենտրոնական ապարատի և նոր «Իսկրա»-յի օպորտունիստական գիծը, վորոշում ընդունեցին բոլշևիկների կազմակերպական կոմիտե ընտրելու և կենտրոնական

րգան «Վպերյոդ» թերթը հրատարակելու
մասին: «Վպերյոդ» թերթը, որի առաջին
համարը լույս տեսավ 1905 թ. հունվարի
4-ին, ըստ էության լենինյան «Իսկրա»-յի
շարունակությունն էր: «Վպերյոդ»-ը նա-
խապատրաստեց բոլշևիկյան 3-րդ համա-
գումարը, միևնույն ժամանակ նա ձևա-
կերպեց բոլշևիզմի ծրագրային, տակտիկա-
կան ու կազմակերպչական մի շարք կարևո-
րագույն հարցեր:

1905 թվին, բոլշևիկների 3-րդ համագումարի որոշմամբ, որպես կենտրոնական օրգան սկսեց լույս տեսնել «Պրոլետարի» բոլշևիկյան թերթը:

1905 թ. հեղափոխության ժամանակ Ռուսաստանում յերևան եկան բոլշևիկյան առաջին լեգալ թերթերը: 1905 թ. աշնանը լույս տեսավ «Նովայա ժիզն», 1906 թ. գարնանը՝ «Վոլնա», «Էխո», «Կազարմա» և այլ թերթեր:

1905 թ. հեղափոխության պարտությունից հետո սկսվում են ռեակցիայի տարիները: Բոլշևիկների կուսակցությունն անցնում է ընդհատակ. ցարիզմը ոչնչացնում է բանվորների բոլոր նվաճումները: Այդ տարիները բոլշևիկների համար յեղան լար-



ված պայքարի տարիներ—աջից՝ լիկվիդատորների դեմ, և «ձախից»՝ բոլշևիզմի կատաղի թշնամի Տրոցկու, դավաճաններ՝ Կամենևի, Զինովյևի, Սոկոլնիկովի, Ռիկովի և ուրիշների դեմ:

1910 թվի վերջերից սկսվում է բանվորական շարժման նոր վերելք: Այդ ժամանակ լույս էր տեսնում միայն անլեգալ կենտրոնական միացյալ օրգան՝ «Սոցիալ դեմոկրատ» թերթը:

1910 թ. դեկտեմբերի 29-ին լույս տեսավ պետական դումայի սոցիալ դեմոկրատական ֆրակցիայի օրգան՝ «Զվեզդա» թերթը, որը 1917 թվի աշնանից ամբողջովին անցավ բոլշևիկների ձեռքը, որի գլուխն անցավ ընկեր Ստալինը:

1912 թվին Լենայի դեպքերը հեղափոխական խոշոր ալիք ստեղծեցին Ռուսաստանում: Հեղափոխական այդ փոթորիկներում ծնվեց բանվորական առաջին մասսայական, լեգալ ամենօրյա թերթը՝ «Պրավդա»-ն:

Բանվորները գումարներ էին հավաքում «Պրավդա»-յի հրատարակման համար: Այդ գործում առանձնապես խոշոր դեր կատարեցին՝ Պիտերի բանվորները: Նրանք բոլոր

իջոցներով ապահովեցին թերթի հրատա-
տարակումը: Այդ գումարների հավաքմանը
ենինը նայում էր, վորպես հեղափոխու-
թյան գործի հսկայական աճի:
«Պրավդա»-յի հիմնական խնդիրն էր՝
կուսակցության շուրջը համախմբել բան-
վորական լայն մասսաներին, պայքարել կո-
ել նրանց սոցիալիստական հեղափոխու-
թյան համար: «Պրավդա»-ն այդ ժամանակ
խմբագրում էին Լենինը և Ստալինը: Առա-
ջին իսկ համարից խմբագրությունն սկսեց
մեծ հոգատարությամբ աճեցնել բան-
վոր գրականագետների, «Պրավդա»-ն հան-
դիսացավ մեր կուսակցության մարտական
օրգանը, վորը համառ պայքար էր մղում
մարքսիզմի բոլոր թշնամիների դեմ, բան-
վորական մասսայական կուսակցություն
ստեղծելու համար, և նա կարճ ժամանա-
կամիջոցում դարձավ հանրամատչելի
թերթ:

Ցարական կառավարությունն ամեն կերպ հետապնդում էր «Պրավդա»-յին: Վոստիկանությունն այս կամ այն առթիվ կոնֆիսկացիայի յեր յենթարկում թերթի առանձին համարները: Այս պատճառով 1912—14 թ. թ. «Պրավդա»-ն լույս տեսավ



տարբեր անուններով. «Տրուդովայա պրավդա», «Պրավդա տրուդա», «Ռաբոչի» և այլն: Ցարական կառավարությունը պատրաստվելով իմպերիալիստական պատերազմի, փորձում էր վոչնչացնել բանվորական կազմակերպություններն ու հրատարակչությունները:

1914 թ. նոյեմբերի 1-ին Լենինը վերսկսեց «Սոցիալ Դեմոկրատի» հրատարակումը, վորի միջոցով նա լուսաբանեց կուսակցության քաղաքականության հարցերը, ձևակերպեց բոլշևիկյան լոզունգները պատերազմի դեմ և առաջադրեց Երրորդ Ինտերնացիոնալի հիմնադրման խնդիրը: Նա մերկացրեց Երկրորդ Ինտերնացիոնալի առաջնորդների դավաճանությունը:

1917 թ. մարտի 18-ին վերսկսվեց «Պրավդա»-յի հրատարակումը: Նա պարզ ու վորոշակի լոզունգներ տվեց բանվորական մասսաներին ու չքավոր գյուղացիներին, կազմակերպեց լենինյան թեորիայի՝ բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի ներաճելու համար: Ապրիլի 7-ին «Պրավդա»-ն հրատարակեց Լենինի ապրիլյան պատմական թեզիսները, վորի դեմ դավաճանական ելույթ ունեցավ

հեղափոխության թշնամի Կամենևը: «Պրավդան», նրա ղեկավարները՝ Լենինը, Ստալինը, մերկացրեցին ու ջախջախեցին դավաճան Կամենևի յելույթը, վորն ուղղված էր Հոկտեմբերյան հեղափոխության դեմ:

Բոլշևիկյան մամուլի— «Պրավդա»-յի պատմությունը մեր կուսակցության պատմությունն է: Նա միշտ և ամենուրեք աշխատավորական մասսաներին է հասցրել բոլշևիզմի մարտական գաղափարները: Կազմակերպել է բանվոր դասակարգին, աշխատավորական լայն զանգվածներին, Լենին-Ստալինի մեծ կուսակցության յուրաքանչյուր խնդրի, յուրաքանչյուր լոզունգի իրագործման համար: Քաղաքացիական կռիվների շրջանում «Պրավդա»-ն վերածվեց քաղաքացիական կռիվների օրգանի, նա կազմակերպեց մասսաներին՝ խորհրդային իշխանության թշնամիների արշավանքները ջախջախելու համար:

Բոլշևիկյան մամուլը մեր հաղթանակների դրոշակակիրն է: Նա մոբիլիզացիայի յենթարկեց աշխատավոր մասսաներին՝ մեր յերկրի քայքայված տնտեսության վերականգնման համար, ծավալուն պայքար տա-



րավ հանուն սոցիալիստական շինարարության հաղթանակի, նա անողոքաբար մերկացրեց ժողովրդի անարգ թշնամիներին: Բոլշևիկյան մամուլի առաջատար «Պրավդա»-ն մեր լայնածավալ յերկրի բոլոր ժողովուրդների լեզուներով թերթերի ուղեցույցն է: Բոլշևիկյան մամուլը «Պրավդա»-յի տրադիցիաներով մոբիլիզացիայի յե յենթարկում մասսաներին՝ սոցիալիստական շինարարության բոլոր ճակատամասերում, ՀամԿ(բ)Կ 18-րդ համագումարի վորոշումների անշեղորեն կենսագործմամբ ամենուրեք ծավալում է ստախանովյան շարժումը, սոցիալիստական մրցությունը, առաջադրում է նորանոր պրոբլեմներ— աշխատանքի արտադրողականության բարձրացման՝ հանուն ստալինյան յերրորդ հնգամյակի խնդիրների կատարման:

## ԹՎԵՐ ՅԵՎ ՓԱՍՏԵՐ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՄԱՍԻՆ

Լենին-Ստալինի կուսակցության հզոր զենքը՝ բոլշևիկյան մամուլը վաղուց արդեն դարձել է խորհրդային լայն մասսաների սեփականությունը, նրանց ավագ-խոր-

հորդառատ ընկերը, մարտական կազմակերպիչը: Ստալինյան մեծ Սահմանադրության մեջ վոսկե տառերով գրված ե մամուլի ազատության, աշխատավորներին և նրանց կազմակերպություններին տպարաններով, թղթի անհրաժեշտ պաշարով ապահովելու մասին: ԽՍՀՄ-ի բազմազգ ժողովուրդների լեզուներով լույս են տեսնում տասնյակ հազարավոր թերթեր և ամսագրեր:

1913 թ. համեմատությամբ, թերթերի ընդհանուր թիվը Խորհրդային Միությունում աճել ե 10 անգամ (859-ից դարձել ե 8550): ԽՍՀՄ-ում ռուսերեն լեզվով լույս տեսնող թերթերի քանակն աճել ե 8 անգամ, իսկ մյուս ազգությունների լեզուներով ավելի քան 26 անգամ: Մինչև Հոկտեմբերյան Հեղափոխությունը Ռուսաստանում լույս եյին տեսնում 24 լեզուներով թերթեր: Այժմ ԽՍՀՄ-ում լույս են տեսնում 70 լեզուներով թերթեր: 1913 թ. բացի ռուսերենից, մյուս լեզուներով լույս եր տեսնում 84 թերթ: Իսկ այժմս լույս ե տեսնում 2188 թերթ: Այն ավելի յե քան 26 անգամ: ԽՍՀՄ-ում լույս տեսնող 8550 անուն թերթերի մեկ համարի տիրաժը



հասնում ե 37,5 միլիոն որինակի: Միութենական և ավտոնոմ հանրապետությունների յերկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային, ռայոնական և բազմատիրաժ տպագիր՝ նշված 8550 անուն թերթերի տարեկան տիրաժը 1939 թ. հունվարի մեկին կազմում եր 7,4 միլիարդ որինակ: Անցյալ տարվա սկզբին «Պրավդա»-յի յուրաքանչյուր մեկ համարի տիրաժը կազմում ե 2 միլիոն որինակ, «Իզվեստիա»-յինը՝ 1,6 միլիոն որինակ և այլն: ԽՍՀՄ-ում լույս տեսնող 4604 բազմատիրաժ տպագիր թերթերի տարեկան տիրաժը կազմում ե 455 միլիոն որինակ, իսկ մեկ համարինը հասնում ե 5,7 միլիոն որինակի:

Տաջիկական, Կիրգիզական միութենական հանրապետությունների ներկա տերիտորիայի վրա 1913 թ. վոչ մի թերթ լույս չեր տեսնում: Իսկ հիմա Տաջիկական ԽՍՀ-ում 3 լեզուներով լույս ե տեսնում 72 անուն թերթ, Կիրգիզական ԽՍՀ-ում 5 լեզուներով լույս ե տեսնում 60 թերթ: 1913 թ. համեմատությամբ ՌԽՖՍ Հանրապետությունում թերթերի թիվը 569-ից ավելացել ե 5761-ով, Ուկրաինայում 172-ից հասել ե 1570-ի, Բելոռուսիայում 19-ից

հասել է 199-ի, Ադրբեջանում 15-ից հա-
սել է 149-ի, Վրաստանում 51-ից՝ 134-ի,
Հայաստանում՝ 6-ից՝ 53-ի, Թուրքմենիա-
յում 2-ից՝ 61-ի, Ուզբեկստանում 14-ից՝
208-ի, Ղազախստանում 11-ից՝ 286-ի և
այլն:

Ցուրաքանչյուր միութենական ավտոնոմ հանրապետությունում, յերկրամասում, մարզում և օկրուգում ամենուրեք լույս են տեսնում կոմյերիտական և ռայոնական թերթեր, լույս են տեսնում նաև մեծ թվով պատի թերթեր: Մեր սքանչելի յերկրում չկա մի գործարան, ֆաբրիկա, շախտ, սովխոզ, կոլխոզ, դպրոց, հիմնարկ-ձեռնարկ, վորտեղ լույս չտեսնեն պատի թերթեր և խմբչովկաներ:

Հայկական ԽՍՀ-ում յերեք լեզուներով լույս են տեսնում 53 անուն թերթ, վորից հանրապետական՝ 8, քաղաքային և շրջանային՝ 38, խսկ մնացածը՝ բազմատիրաժներ: Հանրապետական 8 թերթերի մեկ անգամվա միջին տիրաժը կազմում է 130.500 օրինակ: Հանրապետական 8 թերթերի թղթակիցների թիվը հասնում է 6789 հոգու: Այս բոլորը լենինյան-ստալինյան ազ-



գային քաղաքականության հաղթանակների փայլուն արտահայտությունն է:

1939 թ. Հայկական ԽՍՀ-ից Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցեցին 7 շրջանային թերթեր: Հոկտեմբերյանի շրջանի՝ «Բոլշևիկյան տեմպով» թերթը ցուցահանդեսի կոմիտեյի կողմից պարգևատրվեց 2-րդ աստիճանի դիպլոմով: Իրենց օրինակելի կազմակերպական աշխատանքի շնորհիվ 1940 թ. գյուղատնտեսական ցուցահանդեսին Հայաստանից մասնակցում են վորպես թեկնածուներ՝ 15 թերթեր, վորից հանրապետական՝ 4, շրջանային՝ 9 և բազմատիրաժներ՝ 2: Ամսագրերի քանակը դեռ 1939 թ. հունվարի մեկին 1913 թ. համեմատությամբ աճել եր 33%-ով: 1938 թ. ընթացքում ԽՍՀՄ-ում հրատարակվել է 1762 ամսագիր, վորի տարեկան տիրաժը կազմում է 257 միլլիոն օրինակ:

Մինչև Հոկտեմբերյան Հեղափոխությունը Ռուսաստանում ամսագրերը լույս եյին տեսնում 24 լեզուներով: Խորհրդային Միությունում լույս են տեսնում 50 լեզու-

ներով ամսագրեր։ Հայաստանում լույս տեսնող ամսագրերի թիվը 8-ից ավելի յե, վորոնց մեկ անգամվա տիրաժը կազմում ե 40.606 որինակ։





Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Պատ. քարտուղար՝ Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

Գլավլիտի լիազոր Ջ—1108

Պատվեր՝ 328, տիրաժ 7950

Հանձնված ե արտադրության 17/IV 1940 թ.

Ստորագրված ե տպագրության 23/IV 1940 թ.

Հայկական ՍՍՀ Ժողկոմխորհին կից (Ս. Հ.)

Հրատարակչության տպարան, Երևան